## ԿԵԱՆՔԻ ԽՕՍՔԸ

# 1

Սկիզբէն էր Խօսքը, ու Խօսքը Աստուծոյ քով էր, եւ Խօսքը Աստուած էր. 2 ան սկիզբէն
Աստուծոյ քով էր: 3 Ամէն ինչ եղաւ անո՛վ. եղածներէն ո՛չ մէկը եղաւ առանց անոր: 4
Կեանքը անով էր, ու կեանքը մարդոց լոյսն էր. 5 լոյսը կը փայլէր խաւարի մէջ, բայց
խաւարը չճանչցաւ զայն:

6 Աստուծմէ ղրկուած մարդ մը կար՝ որուն անունը Յովհաննէս էր: 7 Ասիկա եկաւ
վկայութեան համար՝ որ վկայէ Լոյսին մասին, որպէսզի բոլորը հաւատան անոր միջոցով:
8 Ինք չէր այդ Լոյսը, հապա եկաւ՝ որպէսզի վկայէ Լոյսին մասին:

9 Ճշմարիտ Լոյսը ա՛ն էր՝ որ [ա]կը լուսաւորէ աշխարհ եկող" ամէն մարդ: 10 Ինք
աշխարհի մէջ էր, եւ աշխարհը եղաւ իրմով, բայց աշխարհը չճանչցաւ զինք: 11
Իրեններուն եկաւ, սակայն իրենները չընդունեցին զինք: 12 Բայց անոնց՝ որ ընդունեցին
զինք – անոնց՝ որ կը հաւատան իր անունին – իրաւասութիւն տուաւ Աստուծոյ զաւակներ
ըլլալու: 13 Անոնք ո՛չ արիւնէն եւ ո՛չ մարմինի կամքէն ծնան, ո՛չ ալ մարդու կամքէն,
հապա՝ Աստուծմէ: 14 Եւ Խօսքը մարմին եղաւ ու մեր մէջ բնակեցաւ, (եւ դիտեցինք անոր
փառքը՝ Հօրը միածինի փառքին պէս,) շնորհքով ու ճշմարտութեամբ լեցուն:

15 Յովհաննէս վկայեց անոր մասին, եւ աղաղակեց. «Ասիկա՛ է ան՝ որուն մասին
կ՚ըսէի. “Ան որ իմ ետեւէս կու գայ՝ իմ առջեւս եղաւ, որովհետեւ ինձմէ առաջ էր”: 16 Եւ
անոր լիութենէն մենք բոլորս ստացանք շնորհք շնորհքի վրայ: 17 Որովհետեւ Օրէնքը
տրուեցաւ Մովսէսի միջոցով, բայց շնորհքն ու ճշմարտութիւնը եղան Յիսուս Քրիստոսի
միջոցով: 18 Ո՛չ մէկը երբե՛ք տեսած է Աստուած. բայց միածին Որդին՝ որ Հօրը ծոցն է,
ի՛նք պատմեց անոր մասին»:

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉԻՆ ՎԿԱՅՈՒԹԻՒՆԸ

(Մատթ. 3. 1-12: Մարկ. 1. 1-8: Ղուկ. 3. 1-18)

19 Սա՛ է Յովհաննէսի վկայութիւնը, երբ Հրեաները Երուսաղէմէն ղրկեցին
քահանաներ ու Ղեւտացիներ, որպէսզի հարցնեն անոր. «Դուն ո՞վ ես»: 20 Ան
խոստովանեցաւ ու չուրացաւ, հապա յայտարարեց. «Ես Քրիստոսը չեմ»: 21 Հարցուցին
անոր. «Հապա ո՞վ. Եղիա՞ն ես»: Ըսաւ. «Չեմ»: Հարցուցին. «Այն մարգարէ՞ն ես»:
Պատասխանեց. «Ո՛չ»: 22 Ուրեմն ըսին անոր. «Դուն ո՞վ ես. ըսէ՛ մեզի, որպէսզի
պատասխան մը տանինք մեզ ղրկողներուն. ի՞նչ կ՚ըսես քու մասիդ»: 23 Ըսաւ. «Ես անոր
ձայնն եմ՝ որ կը գոչէ անապատին մէջ. “Շտկեցէ՛ք Տէրոջ ճամբան”, ինչպէս Եսայի
մարգարէն ըսաւ»: 24 Այդ ղրկուածները Փարիսեցիներէն էին, 25 ու հարցուցին իրեն.
«Հապա ինչո՞ւ կը մկրտես, եթէ դուն ո՛չ Քրիստոսն ես, ո՛չ Եղիան, ո՛չ ալ մարգարէն»: 26
Յովհաննէս պատասխանեց անոնց. «Ես ջուրո՛վ կը մկրտեմ, բայց մէկը կայ ձեր մէջ՝ որ
դուք չէք ճանչնար. 27 ի՛նք է իմ ետեւէս եկողը՝ որ իմ առջեւս եղաւ, որուն կօշիկին կապը
քակելու արժանի չեմ»: 28 Այս բաները պատահեցան Բեթաբարայի մէջ՝ Յորդանանի միւս
կողմը, ուր Յովհաննէս կը կենար ու կը մկրտէր:

## ԱՍՏՈՒԾՈՅ ԳԱՌԸ

29 Հետեւեալ օրը Յովհաննէս տեսաւ Յիսուսը՝ որ իրեն կու գար, եւ ըսաւ. «Ահա՛
Աստուծոյ Գառը՝ որ կը քաւէ աշխարհի մեղքը: 30 Ասիկա՛ է ան՝ որուն մասին կ՚ըսէի. “Իմ

---

[ա] Կամ՝ աշխարհ գալով կը լուսաւորէ

*ետեւէս մարդ մը կու գայ՝ որ իմ առջեւս եղաւ, որովհետեւ ինձմէ առաջ էր□: 31 Ես չէի
ճանչնար զայն. բայց եկայ ջուրով մկրտելու, որպէսզի ան յայտնուի Իսրայէլի»: 32 Ու
Յովհաննէս վկայելով ըսաւ. «Տեսայ Հոգին, որ աղաւնիի պէս կ՚իջնէր երկինքէն եւ կը
մնար անոր վրայ: 33 Ես չէի ճանչնար զայն, բայց ա՛ն որ ղրկեց զիս ջուրով մկրտելու,
ի՛նք ըսաւ ինծի. “Որո՛ւն վրայ որ տեսնես թէ Հոգին կ՚իջնէ ու կը մնայ, անիկա՛ է՝ որ Սուրբ
Հոգիո՛վ կը մկրտէ□: 34 Ես ալ տեսայ, եւ վկայեցի թէ ա՛յս է Աստուծոյ Որդին»:*

## ՅԻՍՈՒՍԻ ԱՌԱՋԻՆ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

*35 Հետեւեալ օրը Յովհաննէս դարձեալ կայնած էր, եւ իր աշակերտներէն երկուքը: 36
Նայելով Յիսուսի՝ որ կը քալէր, ըսաւ. «Ահա՛ Աստուծոյ Գառը»: 37 Երկու աշակերտները
լսեցին անկէ՝ երբ կը խօսէր, ու հետեւեցան Յիսուսի: 38 Երբ Յիսուս դարձաւ եւ տեսաւ թէ
անոնք կը հետեւէին իրեն, ըսաւ անոնց. «Ի՞նչ կը փնտռէք»: Անոնք ալ ըսին իրեն.
«Ռաբբի՛, (որ թարգմանուելով՝ վարդապետ ըսել է,) ո՞ւր կը բնակիս»: 39 Ըսաւ անոնց.
«Եկէ՛ք եւ տեսէ՛ք»: Գացին ու տեսան թէ ո՛ւր կը բնակէր. եւ այդ օրը մնացին անոր քով,
որովհետեւ գրեթէ [բ]տասներորդ ժամն՚՚ էր: 40 Սիմոն Պետրոսի եղբայրը՝ Անդրէաս մէկն էր
այն երկուքէն, որ լսեցին Յովհաննէսէ ու հետեւեցան անոր: 41 Ան նախ [գ]գտաւ իր
եղբայրը՝ Սիմոնը, եւ [դ]ըսաւ անոր. «Գտա՛նք Մեսիան» (որ կը թարգմանուի՝ [ե]Քրիստոս). 42
ապա տարաւ զայն Յիսուսի քով: Յիսուս նայելով անոր՝ ըսաւ. «Դուն Սիմոնն ես,
Յովնանի որդին. դուն Կեփաս պիտի կոչուիս», որ կը թարգմանուի՝ [զ]Պետրոս:*

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԿԱՆՉԷ ՓԻԼԻՊՊՈՍԸ ԵՒ ՆԱԹԱՆԱՅԷԼԸ

*43 Հետեւեալ օրը՝ Յիսուս ուզեց Գալիլեա երթալ, եւ գտնելով Փիլիպպոսը՝ ըսաւ անոր.
«Հետեւէ՛ ինծի»: 44 Փիլիպպոս Բեթսայիդայէն էր. Անդրէասի ու Պետրոսի քաղաքէն: 45
Փիլիպպոս [է]գտաւ Նաթանայէլը եւ [ը]ըսաւ անոր. «Գտա՛նք ան՝ որուն մասին Մովսէս գրեց
Օրէնքին մէջ, ու մարգարէներն ալ, այսինքն՝ Յիսուս Նազովրեցին, Յովսէփի որդին»: 46
Նաթանայէլ ըսաւ անոր. «Կարելի՞ է որ Նազարէթէն բարի բան մը ելլէ»: Փիլիպպոս ըսաւ
անոր. «Եկո՛ւր ու տե՛ս»: 47 Յիսուս, երբ տեսաւ Նաթանայէլը՝ որ իրեն կու գար, ըսաւ
անոր մասին. «Ահա՛ ճշմա՛րտապէս Իսրայելացի մը՝ որուններսը նենգութիւն չկայ»: 48
Նաթանայէլ ըսաւ անոր. «Ուրկէ՞ կը ճանչնաս զիս»: Յիսուս պատասխանեց անոր. «Դեռ
Փիլիպպոս քեզ չկանչած, դուն՝ որ թզենիին տակն էիր, ես տեսայ քեզ»: 49 Նաթանայէլ
պատասխանեց անոր. «Ռաբբի՛, դո՛ւն ես Աստուծոյ Որդին, դո՛ւն ես Իսրայէլի թագաւորը»:*

---

[բ] *Այսինքն՝ կէսօրէն ետք ժամը չորս*

[գ] *Յուն.՝ կը գտնէ*

[դ] *Յուն.՝ կ՚ըսէ*

[ե] *Այսինքն՝ Օծեալ*

[զ] *Այսինքն՝ վէմ*

[է] *Յուն.՝ կը գտնէ*

[ը] *Յուն.՝ կ՚ըսէ*

*50 Յիսուս պատասխանեց անոր. «Կը [թ]հաւատա՞ս՝ քանի որ ըսի քեզի թէ տեսայ քեզ
թզենիին ներքեւ: Ասկէ աւելի՛ մեծ բաներ պիտի տեսնես»: 51 Նաեւ ըսաւ անոր.
«Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Ասկէ ետք պիտի տեսնէք
երկինքը բացուած, եւ Աստուծոյ հրեշտակները՝ որ կ՚ելլեն ու կ՚իջնեն մարդու Որդիին
վրայ□»:*

## ԿԱՆԱՅԻ ՀԱՐՍԱՆԻՔԸ

# 2

*Երրորդ օրը հարսանիք մը կար Գալիլեայի Կանա քաղաքը, եւ Յիսուսի մայրը հոն էր: 2
Յիսուս ալ հրաւիրուեցաւ այդ հարսանիքին, նաեւ՝ իր աշակերտները: 3 Երբ գինին
պակսեցաւ, Յիսուսի մայրը ըսաւ անոր. «Գինի չունին»: 4 Յիսուս ըսաւ անոր. «Կի՛ն, դուն
ի՞նչ ունիս ինծի հետ. իմ ժամս դեռ հասած չէ»: 5 Իր մայրը ըսաւ սպասարկուներուն.
«Ի՛նչ որ ըսէ ձեզի՝ ըրէ՛ք»: 6 Հոն վեց քարէ կարաս դրուած էր՝ Հրեաներուն մաքրուելու
սովորութեան համաձայն. իւրաքանչիւրը կը պարունակէր երկու կամ երեք մար: 7 Յիսուս
ըսաւ անոնց. «Լեցուցէ՛ք այդ կարասները ջուրով». ու լեցուցին զանոնք՝ մինչեւ բերանը: 8
Եւ ըսաւ անոնց. «Հիմա [ա]հանեցէ՛ք ու տարէ՛ք սեղանապետին». անոնք ալ տարին: 9 Երբ
սեղանապետը համտեսեց գինի դարձած ջուրը՝ չէր գիտեր ուրկէ՛ ըլլալը (բայց
սպասարկուները՝ որոնք հաներ էին ջուրը՝ գիտէին): Սեղանապետը կանչեց փեսան 10 եւ
ըսաւ անոր. «Ամէն մարդ նախ կը մատուցանէ լաւ գինին, ու երբ արբեցած ըլլան՝ ա՛յն
ատեն ցածորակը. բայց դուն լաւ գինին պահեցիր մինչեւ հիմա»: 11 Յիսուս իր
նշաններուն սկիզբը ըրաւ ասիկա՝ Գալիլեայի Կանա քաղաքին մէջ, եւ ցոյց տուաւ իր
փառքը. ու իր աշակերտները հաւատացին իրեն:*

*12 Յետոյ Յիսուս Կափառնայում իջաւ, ինք, իր մայրն ու իր եղբայրները, եւ իր
աշակերտները. բայց շատ օրեր չմնացին հոն:*

## ՅԻՍՈՒՍ Կ՚ԵՐԹԱՅ ՏԱՃԱՐԸ
### (Մատթ. 21. 12-13: Մարկ. 11. 15-17: Ղուկ. 19. 45-46)

*13 Հրեաներուն Զատիկը մօտ էր, ուստի Յիսուս բարձրացաւ Երուսաղէմ: 14 Տաճարին
մէջ գտաւ արջառ, ոչխար եւ աղաւնի ծախողներ, նաեւ լումայափոխներ՝ որոնք նստած
էին: 15 Եւ չուանէ խարազան մը շինելով՝ տաճարէն դուրս հանեց բոլորը, ոչխարներն ու
արջառներն ալ. թափեց լումայափոխներուն լումաները, տապալեց սեղանները, 16 եւ ըսաւ
աղաւնի ծախողներուն. «Վերցուցէ՛ք ատոնք ասկէ. առեւտուրի տուն մի՛ ընէք իմ Հօրս
տունը»: 17 Եւ իր աշակերտները յիշեցին՝ որ գրուած է. «Քու տանդ
նախանձախնդրութիւնը կլանեց զիս»:*

*18 Հետեւաբար Հրեաները ըսին անոր. «Ի՞նչ նշան ցոյց կու տաս մեզի՝ քանի կ՚ընես
այդ բաները»: 19 Յիսուս պատասխանեց անոնց. «Քակեցէ՛ք այս տաճարը, ու երեք
օրուան մէջ պիտի կանգնեցնեմ զայն»: 20 Իսկ Հրեաները ըսին. «Քառասունվեց
տարուան մէջ շինուեցաւ այս տաճարը, եւ դուն երե՞ք օրուան մէջ պիտի կանգնեցնես
զայն»: 21 Բայց ինք կը խօսէր իր մարմինի՛ն տաճարին մասին: 22 Ուստի երբ ինք
մեռելներէն յարութիւն առաւ, իր աշակերտները յիշեցին թէ ըսած [բ]էր ասիկա, ու*

---

[թ] Կամ՝ հաւատաս

[ա] Յուն.՝ քաշեցէ՛ք

[բ] Ոմանք՝ էր իրենց

հաւատացին Գիրքին եւ Յիսուսի ըսած խօսքին:

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ՃԱՆՉՆԱՅ ԱՄԷՆ ՄԱՐԴ

23 Երբ Զատիկի տօնին ատենը Երուսաղէմ էր, շատ մարդիկ հաւատացին անոր
անունին՝ տեսնելով անոր ըրած նշանները: 24 Բայց ինք՝ Յիսուս՝ չէր հաւատար անոնց,
որովհետեւ կը ճանչնար ամէն մարդ. 25 պէտք չունէր՝ որ մէկը ուրիշ մարդու մասին
վկայէր իրեն, քանի որ ինք գիտէր թէ ի՛նչ կայ մարդուն մէջ:

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ՆԻԿՈԴԵՄՈՍ

# 3

Փարիսեցիներէն մարդ մը կար՝ Նիկոդեմոս անունով, որ Հրեաներու պետ մըն էր: 2
Ասիկա գիշերուան մէջ եկաւ [ա]Յիսուսի քով եւ ըսաւ անոր. «Ռաբբի՛, գիտենք թէ դուն
Աստուծմէ վարդապետ եկած ես. որովհետեւ մէ՛կը չի կրնար ընել այն նշանները՝ որ դուն
կ'ընես, եթէ Աստուած իրեն հետ չըլլայ»: 3 Յիսուս պատասխանեց անոր.
«Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ քեզի. "Եթէ մէկը [բ]վերստին չծնի՝ չի
կրնար տեսնել Աստուծոյ թագաւորութիւնը□»: 4 Նիկոդեմոս ըսաւ անոր. «Ի՞նչպէս կրնայ
ծնիլ մարդ մը՝ որ ծերացած է: Կարելի՞ է, որ երկրորդ անգամ մտնէ իր մօր որովայնը եւ
ծնի»: 5 Յիսուս պատասխանեց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ քեզի.
"Եթէ մէկը ջուրէն ու Հոգիէն չծնի՝ չի կրնար մտնել Աստուծոյ թագաւորութիւնը□: 6
Մարմինէն ծնածը՝ մարմին է, եւ Հոգիէն ծնածը՝ հոգի է: 7 Դուն մի՛ զարմանար որ ըսի
քեզի. "Դուք պէտք է վերստին ծնիք□: 8 Հովը կը փչէ ո՛ւր որ ուզէ. կը լսես անոր ձայնը,
բայց չես գիտեր ուրկէ՛ կու գայ, կամ ո՛ւր կ'երթայ: Ո՛վ որ Հոգիէն կը ծնի՝ ա՛յսպէս է»: 9
Նիկոդեմոս ըսաւ անոր. «Ի՞նչպէս կրնայ ըլլալ ատիկա»: 10 Յիսուս պատասխանեց անոր.
«Դուն Իսրայէլի մէջ վարդապետ մըն ես, ու չե՞ս գիտեր այս բաները: 11 Ճշմա՛րտապէս,
ճշմա՛րտապէս կը յայտարարեմ քեզի թէ ինչ որ գիտենք՝ կը խօսինք, եւ ինչ որ տեսանք՝
կը վկայենք, ու չէք ընդունիր մեր վկայութիւնը: 12 Եթէ երկրային բաներու մասին
խօսեցայ ձեզի եւ չէք հաւատար, ի՞նչպէս պիտի հաւատաք՝ եթէ երկնային բաներու
մասին խօսիմ ձեզի: 13 Ո՛չ մէկը երկինք բարձրացաւ, բացի անկէ՝ որ երկինքէն իջաւ,
մարդու Որդին՝ որ երկինքն է: 14 Եւ ինչպէս Մովսէս բարձրացուց օձը անապատին մէջ,
այնպէս պէտք է որ բարձրանայ մարդու Որդին. 15 որպէսզի ո՛վ որ հաւատայ անոր՝
չկորսուի, հապա ունենայ յաւիտենական կեանքը: 16 Որովհետեւ Աստուած ա՛յնպէս սիրեց
աշխարհը, որ մինչեւ անգամ տուաւ իր միածին Որդին, որպէսզի ո՛վ որ հաւատայ անոր՝
չկորսուի, հապա ունենայ յաւիտենական կեանքը: 17 Քանի որ Աստուած աշխարհ ղրկեց
իր Որդին՝ ո՛չ թէ աշխարհը [գ]դատապարտելու, հապա՝ որպէսզի աշխարհը փրկուի անով:
18 Ա՛ն որ կը հաւատայ անոր՝ չի [դ]դատապարտուիր, իսկ ա՛ն որ չի հաւատար՝ անիկա
արդէն դատապարտուած է, որովհետեւ չհաւատաց Աստուծոյ միածին Որդիին անունին:

---

[ա] Ոմանք՝ անոր

[բ] Կամ՝ վերէն

[գ] Յուն.՝ դատելու

[դ] Յուն.՝ դատուիր

19 Սա՛ է [ե]դատապարտութիւնը, որ լոյսը աշխարհ եկաւ, բայց մարդիկ սիրեցին խաւարը՝
փոխանակ լոյսին, քանի որ իրենց գործերը չար էին: 20 Որովհետեւ ո՛վ որ չարիք կը
գործէ, անիկա կ՚ատէ լոյսը եւ չի գար լոյսին քով, որպէսզի չկշտամբուին իր գործերը: 21
Բայց ա՛ն որ կը կիրարկէ ճշմարտութիւնը՝ կու գայ լոյսին քով, որպէսզի իր գործերը
յայտնաբերուին թէ գործուեցան Աստուծմով»:

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ

22 Ասկէ ետք՝ Յիսուս եւ իր աշակերտները եկան Հրէաստանի երկիրը. հոն կը կենար՝
անոնց հետ, ու կը մկրտէր: 23 Յովհաննէս ալ կը մկրտէր Այենոնի մէջ՝ Սաղիմի մօտ,
որովհետեւ հոն շատ ջուր կար. կու գային եւ կը մկրտուէին, 24 որովհետեւ Յովհաննէս
դեռ բանտը նետուած չէր:
25 Ուստի վիճաբանութիւն մը եղաւ Յովհաննէսի աշակերտներէն ոմանց եւ
[գ]Հրեաներուն միջեւ՝ մաքրութեան մասին: 26 Ու եկան Յովհաննէսի քով եւ ըսին անոր.
«Ռաբբի՛, ա՛ն որ քեզի հետ՝ Յորդանանի միւս կողմն էր, որուն մասին դուն վկայեցիր,
ահա՛ ի՛նք կը մկրտէ ու բոլորը կ՚երթան անոր»: 27 Յովհաննէս պատասխանեց. «Մարդ մը
ոչինչ կրնայ ստանալ՝ եթէ երկինքէն տրուած չըլլայ իրեն: 28 Դո՛ւք ձեզմէ կը վկայէք
ինծի համար՝ թէ ըսի. “Ես Քրիստոսը չեմ, հապա ղրկուած եմ անոր առջեւէն□: 29 Ա՛ն որ
ունի հարսը՝ անիկա՛ է փեսան. բայց փեսային բարեկամը, որ կը կենայ եւ կը լսէ զայն,
մեծապէս կ՚ուրախանայ փեսային ձայնին համար: Ուրեմն ահա՛ լիացած է իմ
ուրախութիւնս: 30 Պէտք է որ ան մեծնայ, իսկ ես՝ պզտիկնամ»:

## ԱՆ ՈՐ ԿՈՒ ԳԱՅ ԵՐԿԻՆՔԷՆ

31 Ա՛ն որ կու գայ վերէն՝ բոլորէն վեր է: Ա՛ն որ երկրէն է՝ երկրաւոր է, ու կը խօսի
երկրէն. ա՛ն որ կու գայ երկինքէն՝ բոլորէն վեր է, 32 եւ ինչ որ տեսաւ ու լսեց՝ կը վկայէ
անոնց մասին, եւ ո՛չ մէկը կ՚ընդունի անոր վկայութիւնը: 33 Ա՛ն որ կ՚ընդունի անոր
վկայութիւնը, կը կնքէ թէ Աստուած ճշմարտախօս է. 34 որովհետեւ ա՛ն որ Աստուած
ղրկեց՝ կը քարոզէ Աստուծոյ խօսքերը, քանի որ Աստուած անոր չափով չի տար Հոգին: 35
Հայրը կը սիրէ Որդին, եւ ամէն բան տուած է անոր ձեռքը: 36 Ա՛ն որ կը հաւատայ Որդիին՝
ունի յաւիտենական կեանքը. իսկ ա՛ն որ չ՚անսար Որդիին՝ պիտի չտեսնէ կեանքը, հապա
Աստուծոյ բարկութիւնը կը մնայ անոր վրայ:

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ՍԱՄԱՐԱՑԻ ԿԻՆԸ

# 4

Ուրեմն երբ Տէրը գիտցաւ թէ Փարիսեցիները լսեր են՝ թէ Յիսուս Յովհաննէսէ աւելի
աշակերտներ կ՚ընէ ու կը մկրտէ, 2 (թէպէտ՝ ո՛չ թէ Յիսուս ինք կը մկրտէր, հապա իր
աշակերտները,) 3 թողուց Հրէաստանը եւ դարձեալ Գալիլեա գնաց. 4 ու պէտք էր որ
անցնէր Սամարիայի մէջէն: 5 Ուստի եկաւ Սամարացիներուն մէկ քաղաքը՝ որ Սուքար կը
կոչուէր, այն վայրին մօտ՝ որ Յակոբ տուաւ իր որդիին՝ Յովսէփի: 6 Հոն կար Յակոբի մէկ
աղբիւրը. ուրեմն Յիսուս՝ ճամբորդութենէն յոգնած ըլլալով՝ նստաւ այդ աղբիւրին քով:

---

[ե] Յուն.՝ դատաստանը

[գ] Կամ՝ Հրեայի մը

*Գրեթէ [ա]վեցերորդ ժամն" էր:*

*7 Սամարիայէն կին մը եկաւ ջուր քաշելու: Յիսուս ըսաւ անոր. «Ինծի ջուր տուր՝
խմելու». 8 (քանի որ իր աշակերտները քաղաքը գացեր էին՝ կերակուր գնելու համար:) 9
Ուստի սամարացի կինը ըսաւ անոր. «Դուն՝ որ Հրեայ ես, ի՞նչպէս կ'ուզես ջուր խմել
ինծմէ՝ սամարացի կնոջմէ մը». որովհետեւ Հրեաները չեն հաղորդակցիր
Սամարացիներուն հետ: 10 Յիսուս պատասխանեց անոր. «Եթէ դուն գիտնայիր Աստուծոյ
պարգեւը, եւ թէ ո՛վ է ա՛ն՝ որ կ'ըսէ քեզի. “Ինծի ջուր տուր խմելու□, դո՛ւն պիտի ուզէիր
իրմէ, ու ինք կենարա՛ր ջուր պիտի տար քեզի»: 11 Կինը ըսաւ անոր. «Տէ՛ր, դուն ոչինչ
ունիս՝ ջուր քաշելու համար, եւ այս հորը խորունկ է. ուրեմն ուրկէ՞ պիտի ունենաս այդ
կենարար ջուրը: 12 Միթէ դուն աւելի՞ մեծ ես քան մեր հայրը՝ Յակոբ, որ տուաւ մեզի այս
հորը, ու ասկէ խմեցին ինք, իր որդիները եւ իր անասունները»: 13 Յիսուս պատասխանեց
անոր. «Ո՛վ որ խմէ այս ջուրէն՝ դարձեալ պիտի ծարաւնայ, բայց ո՛վ որ խմէ այն ջուրէն՝
որ ես պիտի տամ անոր, յաւիտեան պիտի չծարաւնայ: 14 Հապա այն ջուրը՝ որ ես պիտի
տամ անոր, պիտի ըլլայ անոր մէջ ջուրի աղբիւր մը՝ որ կը բխի յաւիտենական կեանքի
համար»: 15 Կինը ըսաւ անոր. «Տէ՛ր, տո՛ւր ինծի այդ ջուրը, որպէսզի չծարաւնամ, եւ հոս
չգամ՝ ջուր քաշելու»: 16 Յիսուս ըսաւ անոր. «Գնա՛, կանչէ՛ ամուսինդ ու հո՛ս եկուր»: 17
Կինը պատասխանեց. «Ես ամուսին չունիմ»: Յիսուս ըսաւ անոր. «Ճի՛շդ ըսիր. “Ամուսին
չունիմ□, 18 որովհետեւ դուն հինգ ամուսին ունեցեր ես, եւ ա՛ն որ հիմա ունիս՝ ամուսինդ
չէ. ճի՛շդ ըսիր ատիկա»: 19 Կինը ըսաւ անոր. «Տէ՛ր, կը նշմարեմ թէ դուն մարգարէ մըն
ես: 20 Մեր հայրերը երկրպագեցին այս լերան վրայ. բայց դուք կ'ըսէք թէ Երուսաղէմ է
միակ տեղը՝ ուր պէտք է երկրպագել»: 21 Յիսուս ըսաւ անոր. «Կի՛ն, հաւատա՛ ինծի, որ
ժամը պիտի գայ, երբ ո՛չ այս լերան վրայ եւ ո՛չ Երուսաղէմի մէջ պիտի երկրպագէք
Հօրը: 22 Դուք կ'երկրպագէք անո՛ր՝ որ չէք ճանչնար. մենք կ'երկրպագենք անո՛ր՝ որ կը
ճանչնանք. որովհետեւ փրկութիւնը Հրեաներէն է: 23 Բայց ժամը պիտի գայ եւ հիմա ալ է,
երբ ճշմարիտ երկրպագողները պիտի երկրպագեն Հօրը՝ հոգիով ու ճշմարտութեամբ,
որովհետեւ Հայրն ալ կ'ուզէ այդպիսինե՛ր՝ իրեն երկրպագելու համար: 24 Աստուած Հոգի
է, եւ իրեն երկրպագողներն ալ պէտք է որ երկրպագեն հոգիով ու ճշմարտութեամբ»: 25
Կինը ըսաւ անոր. «Գիտեմ թէ [բ]Մեսիան պիտի գայ, (Քրիստոս կոչուածը.) երբ ինք գայ՝
պիտի հաղորդէ մեզի ամէն բան»: 26 Յիսուս ըսաւ անոր. «Ես՝ որ քեզի հետ կը խօսիմ՝
ա՛ն եմ»: 27 Այդ ատեն իր աշակերտները եկան, ու զարմացան որ կը խօսակցէր այդ կնոջ
հետ, բայց անոնցմէ ո՛չ մէկը ըսաւ. «Ի՞նչ կ'ուզես», կամ. «Ի՞նչ կը խօսիս անոր հետ»:
28 Ուստի կինը թողուց իր [գ]սափորը եւ գնաց քաղաքը, ու ըսաւ քաղաքացիներուն. 29
«Եկէ՛ք, տեսէ՛ք մարդ մը՝ որ ըսաւ ինծի ամէն ինչ որ գործեր եմ. արդեօք ա՞ն է
Քրիստոսը»: 30 Անոնք ալ ելան քաղաքէն եւ կու գային անոր:*

*31 Այդ միջոցին աշակերտները իրեն կը թախանձէին ու կ'ըսէին. «Ռաբբի՛, կե՛ր»: 32 Ան
ալ ըսաւ անոնց. «Ես՝ ուտելու համար՝ ունի՛մ կերակուր մը, որ դուք չէք գիտեր»: 33
Ուրեմն աշակերտները կ'ըսէին իրարու. «Արդեօք մէկը ուտելիք բերա՞ւ իրեն»: 34 Յիսուս
ըսաւ անոնց. «Իմ կերակուրս՝ գործադրել է զիս ղրկողին կամքը, եւ աւարտել անոր գործը:
35 Դուք չէ՞ք ըսեր. “Տակաւին չորս ամիս կայ՝ որ հունձքի ատենը գայ□: Ահա՛ ես կը
յայտարարեմ ձեզի. “Բարձրացուցէ՛ք ձեր աչքերը եւ դիտեցէ՛ք արտե՛րը. արդէ՛ն ճերմկած
ու հնձուելու պատրաստ են□: 36 Ա՛ն որ կը հնձէ՝ վարձք կը ստանայ, եւ պտուղ կը ժողվէ*

---

[ա] Այսինքն՝ կէսօր

[բ] Այսինքն՝ Օծեալը

[գ] Յուն.՝ կարասը

*յաւիտենական կեանքի համար, որպէսզի սերմանողն ու հնձողը ուրախանան միասին: 37
Որովհետեւ այս բանին մէջ ճշմարիտ է այն խօսքը. "Մէկը կը սերմանէ, եւ ուրի՛շ մը կը
հնձէ□: 38 Ես ղրկեցի ձեզ հնձելու զայն՝ որուն համար չաշխատեցաք. ուրիշնե՛րը
աշխատեցան, ու դո՛ւք մտաք անոնց աշխատանքին մէջ»:*

*39 Այդ քաղաքէն շատ Սամարացիներ հաւատացին իրեն՝ այդ կնոջ խօսքին համար, որ
վկայեց. «Ի՛նչ որ գործեր էի՝ ամէ՛նը ըսաւ ինծի»: 40 Երբ Սամարացիները եկան իրեն, կը
թախանձէին որ մնայ իրենց քով. ու մնաց հոն երկու օր: 41 Շատե՛ր իրեն հաւատացին՝ իր
խօսքին համար, 42 եւ կ՚ըսէին կնոջ. «Ա՛լ կը հաւատանք՝ ո՛չ թէ քու խօսքիդ համար, այլ
մենք իսկ լսեցինք, ու գիտենք թէ ա՛յս է ճշմարտապէս աշխարհի Փրկիչը՝ Քրիստոսը»:*

*43 Երկու օր ետք՝ մեկնեցաւ անկէ եւ գնաց Գալիլեա, 44 որովհետեւ Յիսուս ինք վկայեց
թէ "մարգարէ՛ մը պատիւ չ՚ունենար իր բնագաւառին մէջ□: 45 Ուրեմն երբ Գալիլեա
հասաւ՝ Գալիլեացիները ընդունեցին զինք, քանի որ տեսած էին այն բոլոր հրաշքները, որ
ինք ըրաւ տօնին ատենը՝ Երուսաղէմի մէջ. որովհետեւ իրենք ալ գացեր էին այդ տօնին:*

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԲՈՒԺԷ ԱԶՆՈՒԱԿԱՆԻ ՄԸ ՈՐԴԻՆ

*46 Յիսուս դարձեալ եկաւ Գալիլեայի Կանա քաղաքը, ուր ջուրը փոխած էր գինիի: Հոն
[դ]պալատական մը կար, որուն որդին հիւանդ էր՝ Կափառնայումի մէջ: 47 Ասիկա՝ լսելով թէ
Յիսուս Հրէաստանէն եկած է Գալիլեա, եկաւ անոր ու կը թախանձէր՝ որ իջնէ եւ բժշկէ իր
որդին, որովհետեւ մեռնելու մօտ էր: 48 Իսկ Յիսուս ըսաւ անոր. «Եթէ նշաններ ու
սքանչելիքներ չտեսնէք՝ բնա՛ւ պիտի չհաւատաք»: 49 Պալատականը ըսաւ անոր. «Տէ՛ր,
իջի՛ր, քանի դեռ տղաս մեռած չէ»: 50 Յիսուս ըսաւ անոր. «Գնա՛, որդիդ կ՚ապրի՛»:
Մարդն ալ հաւատաց այն խօսքին՝ որ Յիսուս ըսաւ իրեն, ու գնաց: 51 Երբ արդէն կ՚իջնէր,
իր ծառաները դիմաւորեցին զինք եւ լուր տուին՝ ըսելով. «Որդիդ ո՛ղջ է»: 52 Ուստի
հարցափորձեց զանոնք թէ ո՛ր ժամուն սկսաւ լաւանալ: Ըսին իրեն. «Երէկ [ե]եօթներորդ
ժամուն" տենդը թողուց զայն»: 53 Ուստի անոր հայրը գիտցաւ թէ ա՛յն ժամն էր՝ երբ
Յիսուս ըսաւ իրեն. «Որդիդ կ՚ապրի՛», ու հաւատաց՝ ինք եւ իր ամբողջ տունը: 54 Յիսուս
դարձեալ ըրաւ այս երկրորդ նշանը՝ երբ Հրէաստանէն Գալիլեա եկաւ:*

## ԲԺՇԿՈՒԹԻՒՆ ԱՒԱԶԱՆԻՆ ՔՈՎ

# 5

*Ասկէ ետք Հրեաներուն տօնն էր, ու Յիսուս Երուսաղէմ բարձրացաւ: 2 Երուսաղէմի
մէջ՝ Ոչխարներու դրան քով աւազան մը կայ, որ եբրայերէն Բեթհեզդա կը կոչուի եւ հինգ
սրահ ունի: 3 Ասոնց մէջ պառկած էր հիւանդներու մեծ բազմութիւն մը՝ կոյրեր, կաղեր,
չորցածներ, որոնք կը սպասէին ջուրին խառնուելուն. 4 որովհետեւ հրեշտակ մը ատեն-
ատեն կ՚իջնէր աւազանը ու կը խառնէր ջուրերը, եւ ո՛վ որ ջուրին խառնուելէն ետք անոր
մէջ առաջինը մտնէր՝ կ՚առողջանար, ի՛նչ ախտ ալ ունենար: 5 Հոն մարդ մը կար, որ
հիւանդութիւն մը ունէր երեսունութ տարիէ ի վեր: 6 Երբ Յիսուս տեսաւ զայն՝ պառկած, ու
գիտցաւ թէ արդէն շատ ժամանակէ ի վեր հիւանդ էր, ըսաւ անոր. «Կ՚ուզե՞ս
առողջանալ»: 7 Հիւանդը պատասխանեց անոր. «Տէ՛ր, մա՛րդ մը չունիմ, որ երբ ջուրերը
խառնուին՝ ձգէ զիս աւազանը. հապա՝ մինչ կ՚երթամ՝ ինձմէ առաջ ուրի՛շ մը կ՚իջնէ»: 8
Յիսուս ըսաւ անոր. «Ոտքի՛ ելիր, ա՛ռ մահիճդ ու քալէ՛»: 9 Իսկոյն մարդը առողջացաւ, եւ*

---

[դ] *Յուն.՝ արքունի պաշտօնեայ*

[ե] *Այսինքն՝ կէսօրէն ետք ժամը մէկին*

*առնելով իր մահիճը՝ կը քալէր. իսկ այդ օրը Շաբաթ էր: 10 Ուրեմն Հրեաները ըսին
բժշկուած մարդուն. «Շաբա՛թ է, եւ արտօնուած չէ՝ որ վերցնես մահիճդ»: 11
Պատասխանեց անոնց. «Ա՛ն որ բժշկեց զիս, ի՛նք ըսաւ ինծի. “Ա՛ռ մահիճդ ու քալէ□»: 12
Ուրեմն հարցուցին անոր. «Ո՞վ է այն մարդը, որ ըսաւ քեզի. “Ա՛ռ մահիճդ ու քալէ□»: 13
Եւ բժշկուողը չէր գիտեր թէ ո՛վ է ան, որովհետեւ Յիսուս մէկդի քաշուեցաւ՝ այնտեղ
բազմութիւն ըլլալուն համար: 14 Անկէ ետք Յիսուս՝ գտնելով զայն տաճարին մէջ՝ ըսաւ
անոր. «Ահա՛ բժշկուեցար. ա՛լ մի՛ մեղանչեր, որ աւելի գէշ բան մը չպատահի քեզի»: 15
Մարդը գնաց ու հաղորդեց Հրեաներուն թէ Յիսո՛ւս էր՝ որ բժշկեց զինք:*

*16 Ուստի Հրեաները կը հալածէին Յիսուսը եւ կը ջանային սպաննել զայն՝ քանի որ
Շաբաթ օրը կ՚ընէր այս բաները: 17 Բայց Յիսուս պատասխանեց անոնց. «Իմ Հայրս
մինչեւ հիմա կը գործէ, ե՛ս ալ կը գործեմ»: 18 Ուստի Հրեաները ա՛լ աւելի կը ջանային
սպաննել զայն, քանի որ ո՛չ միայն Շաբաթ օրը կը լուծէր, հապա նաեւ Աստուած իր
Հայրը կը կոչէր, եւ այսպէս՝ ինքզինք Աստուծոյ հաւասար կ՚ընէր:*

## ՈՐԴԻԻՆ ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆԸ

*19 Իսկ Յիսուս ըսաւ անոնց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի.
“Որդին ինքնիրմէ ոչինչ կրնայ ընել, հապա միայն ինչ որ տեսնէ՝ որ Հայրը կ՚ընէ.
որովհետեւ ինչ որ ա՛ն կ՚ընէ, նմանապէս Որդի՛ն ալ կ՚ընէ այդ բաները□: 20 Քանի որ
Հայրը կը սիրէ Որդին, եւ ամէն բան ցոյց կու տայ անոր՝ ինչ որ ինք կ՚ընէ: Ասոնցմէ աւելի
մեծ գործեր ալ ցոյց պիտի տայ անոր, որպէսզի դուք զարմանաք. 21 որովհետեւ ինչպէս
Հայրը մեռելները կը յարուցանէ եւ կեանք կու տայ, նոյնպէս ալ Որդին կեանք կու տայ՝
անոնց որ ուզէ: 22 Քանի որ Հայրը ո՛չ մէկը կը դատէ, հապա ամէն դատաստան Որդիին
տուաւ. 23 որպէսզի բոլորը պատուեն Որդին, ինչպէս կը պատուեն Հայրը: Ա՛ն որ չի
պատուեր Որդին, չի պատուեր Հա՛յրը՝ որ ղրկեց զայն: 24 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս
կը յայտարարեմ ձեզի. “Ա՛ն որ մտիկ կ՚ընէ իմ խօսքս, ու կը հաւատայ անոր՝ որ ղրկեց
զիս, ունի յաւիտենական կեանքը, եւ չ՚իյնար [ա]դատապարտութեան տակ, հապա անցած է
մահէն դէպի կեանք□: 25 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Ժամը
պիտի գայ ու հիմա ալ է, երբ մեռելնե՛րը պիտի լսեն Աստուծոյ Որդիին ձայնը. եւ անոնք որ
կը լսեն՝ պիտի ապրին□: 26 Որովհետեւ ինչպէս Հայրը ինքնին մէջ կեանք ունի, այնպէս
ալ Որդիին տուաւ՝ որ ինքնին մէջ կեանք ունենայ. 27 Նաեւ անոր տուաւ դատաստան
կիրարկելու իշխանութիւն, քանի որ ան մարդու Որդին է: 28 Մի՛ զարմանաք ասոր վրայ.
որովհետեւ ժամը պիտի գայ՝ երբ բոլոր գերեզմաններու մէջ եղողները պիտի լսեն անոր
ձայնը, 29 ու դուրս պիտի գան. անոնք որ բարիք գործեր են՝ կեանքի յարութեան համար,
եւ անոնք որ չարիք գործեր են՝ [բ]դատապարտութեան յարութեան համար»:*

## ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՅԻՍՈՒՍԻ ՄԱՍԻՆ

*30 «Ես ինծմէ ոչինչ կրնամ ընել. ինչպէս կը լսեմ՝ այնպէս կը դատեմ, եւ իմ
դատաստանս արդար է. որովհետեւ ո՛չ թէ իմ կամքս կը փնտռեմ, հապա [գ]անոր կամքը՝ որ
ղրկեց զիս: 31 Եթէ ես վկայեմ իմ մասիս՝ իմ վկայութիւնս ճշմարիտ չէ: 32 Ուրի՛շ մըն է՝*

---

[ա] *Յուն.՝ դատաստանի*

[բ] *Յուն.՝ դատաստանի*

[գ] *Ոմանք՝ Հօրը*

*որ կը վկայէ իմ մասին. ու ես գիտեմ թէ ճշմարի՛տ է այն վկայութիւնը՝ որ ինք վկայեց իմ
մասին: 33 Դուք մարդ ղրկեցիք Յովհաննէսի, եւ ինք վկայ եղաւ ճշմարտութեան: 34 Բայց
ես ո՛չ թէ մարդոցմէ վկայութիւն կը ստանամ, հապա այս բաները կ՚ըսեմ՝ որպէսզի դուք
փրկուիք: 35 Ան ճրագ մըն էր՝ որ կը վառէր ու կը փայլէր, եւ դուք ուզեցիք ժամանակ մը
ցնծալ անոր լոյսով: 36 Սակայն ես ունիմ աւելի մեծ վկայութիւն՝ քան Յովհաննէսինը.
որովհետեւ այն գործերը որ Հայրը տուաւ ինծի՝ որպէսզի աւարտեմ զանոնք, այդ նոյն
գործերը որ ես կ՚ընեմ՝ կը վկայեն իմ մասին թէ Հա՛յրը ղրկեց զիս: 37 Եւ Հայրը, որ ղրկեց
զիս, ի՛նք վկայեց իմ մասին: Դուք բնա՛ւ լսած չէք անոր ձայնը, ո՛չ ալ տեսած անոր
կերպարանքը. 38 անոր խօսքն ալ բնակած չէ ձեր մէջ, որովհետեւ դուք չէք հաւատար
անոր՝ որ ինք ղրկեց: 39 Զննեցէ՛ք Գիրքերը, որովհետեւ դուք կը կարծէք անոնցմո՛վ
ունենալ յաւիտենական կեանքը. բուն անո՛նք են՝ որ կը վկայեն իմ մասին: 40 Դուք չէք
ուզեր ինծի գալ՝ որ կեանք ունենաք: 41 Ես փառք չեմ ստանար մարդոցմէ. 42 բայց գիտեմ
ձեզ, որ չունիք ձեր մէջ Աստուծոյ սէրը: 43 Ես եկայ իմ Հօրս անունով՝ ու չէք ընդունիր
զիս. եթէ ուրիշ մէկը գայ ինքնիր անունով՝ պիտի ընդունիք զինք: 44 Ի՞նչպէս կրնաք
հաւատալ, դո՛ւք որ փառք կը ստանաք իրարմէ՛, եւ չէք փնտռեր այն փառքը՝ որ կու գայ
միայն Աստուծմէ: 45 Մի՛ կարծէք թէ ե՛ս պիտի ամբաստանեմ ձեզ Հօրը առջեւ: Կա՛յ մէկը՝
որ կ՚ամբաստանէ ձեզ, Մովսէ՛ս՝ որուն կը յուսաք: 46 Որովհետեւ եթէ Մովսէսի
հաւատայիք, ինծի՛ ալ պիտի հաւատայիք, քանի որ ան գրեց իմ մասին: 47 Բայց եթէ չէք
հաւատար անոր գրածներուն, ի՞նչպէս պիտի հաւատաք իմ խօսքերուս»:*

### ՅԻՍՈՒՍ ԿԸ ԿԵՐԱԿՐԷ ՀԻՆԳ ՀԱԶԱՐԸ
*(Մատթ. 14. 13-21: Մարկ. 6. 30-44: Ղուկ. 9. 10-17)*

## 6

*Ասկէ ետք, Յիսուս գնաց Գալիլեայի՝ այսինքն Տիբերիայի ծովուն միւս կողմը: 2 Մեծ
բազմութիւն մը կը հետեւէր անոր, որովհետեւ կը տեսնէին այն նշանները՝ որ կ՚ընէր
հիւանդներուն վրայ: 3 Յիսուս լեռը ելաւ ու նստաւ հոն՝ իր աշակերտներուն հետ: 4
Հրեաներուն Զատիկի տօնը մօտ էր:*

*5 Երբ Յիսուս աչքերը բարձրացուց ու տեսաւ թէ մեծ բազմութիւն մը կու գար իրեն,
ըսաւ Փիլիպպոսի. «Ուրկէ՞ հաց գնենք՝ որպէսզի ասոնք ուտեն»: 6 (Ասիկա կ՚ըսէր՝ զայն
փորձելու համար, քանի որ ինք գիտէր թէ ի՛նչ պիտի ընէր:) 7 Փիլիպպոս պատասխանեց
անոր. «Երկու հարիւր դահեկանի հաց չի բաւեր անոնց, որպէսզի իւրաքանչիւրը քիչ մը
առնէ»: 8 Իր աշակերտներէն մէկը, Սիմոն Պետրոսի եղբայրը՝ Անդրէաս, ըսաւ իրեն. 9
«Հոս պատանի մը կայ, որ ունի հինգ գարիէ նկանակ ու երկու ձուկ. բայց ի՞նչ են անոնք՝
այդչափ մարդոց համար»: 10 Յիսուս ըսաւ. «Նստեցուցէ՛ք այդ մարդիկը»: Հոն առատ
խոտ կար, ու մարդիկը նստան՝ թիւով հինգ հազարի չափ: 11 Յիսուս առաւ նկանակները,
շնորհակալ եղաւ եւ բաշխեց աշակերտներուն, աշակերտներն ալ՝ նստողներուն.
նմանապէս ձուկերէն՝ ո՛րչափ որ ուզեցին: 12 Երբ կշտացան՝ ըսաւ իր աշակերտներուն.
«Ժողվեցէ՛ք աւելցած բեկորները, որպէսզի ոչինչ կորսուի»: 13 Ուստի ժողվեցին, եւ
տասներկու կողով լեցուցին այդ հինգ գարիէ նկանակներէն մնացած բեկորներով, որոնք
ուտողներէն աւելցան: 14 Իսկ մարդիկը, երբ տեսան Յիսուսի ըրած նշանը, կ՚ըսէին.
«Ճշմա՛րտապէս ասիկա՛ է այն մարգարէն, որ աշխարհ պիտի գար»: 15 Ուրեմն Յիսուս,
գիտնալով թէ պիտի գան յափշտակելու զինք՝ որպէսզի թագաւոր ընեն զինք, դարձեալ
լեռը գնաց՝ առանձին:*

### ՅԻՍՈՒՍ ԿԸ ՔԱԼԷ ՋՈՒՐԻՆ ՎՐԱՅԷՆ
*(Մատթ. 14. 22-33: Մարկ. 6. 45-52)*

16 Երբ իրիկուն եղաւ՝ իր աշակերտները իջան ծովեզերքը, 17 ու նաւ մտնելով
կ՚երթային ծովուն միւս կողմը՝ Կափառնայում: Արդէն մթնցած էր, բայց դեռ Յիսուս եկած
չէր իրենց: 18 Ծովն ալ [ա]ալեկոծ էր՝ սաստիկ փչող հովէն: 19 Երբ թի վարելով քսանհինգ
կամ երեսուն ասպարէզի չափ գացին՝ տեսան Յիսուսը, որ կը մօտենար նաւուն՝ ծովուն
վրայ քալելով, ու վախցան: 20 Բայց ինք ըսաւ անոնց. «Ե՛ս եմ, մի՛ վախնաք»: 21 Ուստի
ուզեցին ընդունիլ զինք նաւուն մէջ. եւ նաւը իսկոյն հասաւ այն երկիրը՝ ուր կ՚երթային:

## ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԿԸ ՓՆՏՌԷ ՅԻՍՈՒՍԸ

22 Հետեւեալ օրը՝ բազմութիւնը, որ ծովուն միւս եզերքն էր, տեսաւ թէ ուրիշ նաւակ
չկար այն մէկէն զատ՝ որուն մէջ անոր աշակերտները մտած էին, եւ թէ Յիսուս իր
աշակերտներուն հետ մտած չէր նաւակը, այլ անոր աշակերտները առանձին գացեր էին
23 (բայց Տիբերիայէն ուրիշ նաւակներ եկան այն տեղին մօտ, ուր կերեր էին հացը՝ Տէրոջ
շնորհակալ ըլլալէն ետք): 24 Ուրեմն բազմութիւնը՝ տեսնելով թէ ո՛չ Յիսուս հոն է, ո՛չ ալ
անոր աշակերտները, իրե՛նք ալ նաւ մտան եւ գացին Կափառնայում՝ փնտռելու Յիսուսը:

## ՅԻՍՈՒՍ՝ ԿԵԱՆՔԻ ՀԱՑԸ

25 Երբ գտան զինք՝ ծովուն միւս եզերքը, ըսին իրեն. «Ռաբբի՛, ե՞րբ եկար հոս»: 26
Յիսուս պատասխանեց անոնց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի.
“Դուք զիս կը փնտռէք՝ ո՛չ թէ քանի որ նշաններ տեսաք, հապա՝ որովհետեւ նկանակներէն
կերաք ու կշտացաք□: 27 Գացէ՛ք, գործեցէ՛ք ո՛չ թէ կորստական կերակուրին համար,
հապա այն կերակուրին համար՝ որ կը մնայ յաւիտենական կեանքին մէջ, եւ մարդու
Որդի՛ն պիտի տայ ձեզի, որովհետեւ Հայրը՝ Աստուած զի՛նք կնքեց»: 28 Ուրեմն ըսին
իրեն. «Ի՞նչ ընենք՝ որպէսզի կատարենք Աստուծոյ գործերը»: 29 Յիսուս պատասխանեց
անոնց. «Սա՛ է Աստուծոյ գործը, որ հաւատաք անոր ղրկածին»: 30 Ուստի ըսին իրեն.
«Բայց դուն ի՞նչ նշան կ՚ընես, որ տեսնենք ու հաւատանք քեզի. ի՞նչ կը գործես: 31 Մեր
հայրերը անապատին մէջ մանանա՛ն կերան, ինչպէս գրուած է. “Երկինքէն հաց տուաւ
անոնց՝ որպէսզի ուտեն□»: 32 Իսկ Յիսուս ըսաւ անոնց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս
կը յայտարարեմ ձեզի. “Մովսէս չտուաւ ձեզի երկնային հացը, բայց իմ Հա՛յրս կու տայ
ձեզի ճշմարիտ երկնային հացը□. 33 որովհետեւ Աստուծոյ հացը ա՛ն է, որ կ՚իջնէ
երկինքէն եւ կեանք կու տայ աշխարհի»: 34 Ուրեմն ըսին իրեն. «Տէ՛ր, ամէ՛ն ատեն տուր
մեզի այդ հացը»: 35 Յիսուս ըսաւ անոնց. «Ե՛ս եմ կեանքի հացը. ա՛ն որ կու գայ ինծի՝
երբե՛ք պիտի չանօթենայ, եւ ա՛ն որ կը հաւատայ ինծի՝ պիտի չծարաւնայ: 36 Բայց ես
ըսի ձեզի. “Դուք զիս տեսաք ալ, ու չէք հաւատար□: 37 Բոլոր անոնք որ Հայրը կու տայ
ինծի՝ պիտի գան ինծի, եւ ա՛ն որ կու գայ ինծի՝ բնա՛ւ պիտի չվտարեմ: 38 Որովհետեւ ես
իջայ երկինքէն՝ գործադրելու ո՛չ թէ ի՛մ կամքս, հապա անո՛ր կամքը՝ որ ղրկեց զիս: 39 Եւ
զիս ղրկող Հօրը կամքը սա՛ է, որ ո՛չ մէկը կորսնցնեմ բոլոր անոնցմէ՝ որ ինք տուաւ ինծի,
հապա յարուցանեմ զանոնք՝ վերջին օրը: 40 Որովհետեւ զիս ղրկողին կամքը սա՛ է, որ ո՛վ
որ տեսնէ Որդին ու հաւատայ իրեն՝ ունենայ յաւիտենական կեանքը. ե՛ս ալ պիտի
յարուցանեմ զայն՝ վերջին օրը»:

41 Ուստի Հրեաները կը տրտնջէին իրեն դէմ, որովհետեւ ըսաւ. «Ե՛ս եմ երկինքէն իջած
հացը», 42 եւ կ՚ըսէին. «Ասիկա Յովսէփի որդին՝ Յիսուսը չէ՞, որուն հայրն ու մայրը կը

---

[ա] Յուն.՝ բարձրացած

ճանչնանք. հապա ի՞նչպէս ասիկա կ՚ըսէ. “Ես իջայ երկինքէն□»: 43 Յիսուս ալ
պատասխանեց անոնց. «Մի՛ տրտնջէք ձեր մէջ: 44 Ո՛չ մէկը կրնայ գալ ինծի՝ եթէ զիս
ղրկող Հայրը չքաշէ զայն. ու ես պիտի յարուցանեմ զայն՝ վերջին օրը: 45
[բ]Մարգարէներուն մէջ գրուած է. “Բոլորն ալ սորված պիտի ըլլան Աստուծմէ□: Ո՛վ որ կը
լսէ Հօրմէն ու կը սորվի՝ ինծի՛ կու գայ: 46 Ո՛չ մէկը տեսած է Հայրը, բացի անկէ՝ որ
Աստուծմէ է. անիկա՛ տեսած է Հայրը: 47 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ
ձեզի. “Ա՛ն որ կը հաւատայ ինծի՝ ունի՛ յաւիտենական կեանքը□: 48 Ե՛ս եմ կեանքի հացը:
49 Ձեր հայրերը կերան մանանան անապատին մէջ, բայց մեռան: 50 Ա՛յս է այն հացը՝ որ
կ՚իջնէ երկինքէն, որպէսզի եթէ մէկը ուտէ ասկէ՝ չմեռնի: 51 Ե՛ս եմ կենարար հացը՝ որ
իջայ երկինքէն: 52 Եթէ մէկը ուտէ այս հացէն՝ պիտի ապրի յաւիտեա՛ն. եւ այն հացը որ
ես պիտի տամ՝ իմ մարմի՛նս է, որ պիտի տամ աշխարհի կեանքին համար»:

53 Ուստի Հրեաները կը վիճէին իրարու հետ եւ կ՚ըսէին. «Ի՞նչպէս ասիկա կրնայ տալ
մեզի իր մարմինը՝ ուտելու»: 54 Իսկ Յիսուս ըսաւ անոնց. «Ճշմա՛րտապէս,
ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Եթէ չուտէք մարդու Որդիին մարմինը ու չխմէք
անոր արիւնը, կեանքը չէք ունենար ձեր մէջ□: 55 Ո՛վ որ կ՚ուտէ իմ մարմինս եւ կը խմէ իմ
արիւնս՝ ունի յաւիտենական կեանքը, ու ես պիտի յարուցանեմ զայն՝ վերջին օրը. 56
որովհետեւ իմ մարմինս ճշմա՛րտապէս կերակուր է, եւ իմ արիւնս՝ ճշմա՛րտապէս խմելիք:
57 Ա՛ն որ կ՚ուտէ իմ մարմինս ու կը խմէ իմ արիւնս՝ անիկա՛ կը բնակի իմ մէջս, եւ ես՝
անոր մէջ: 58 Ինչպէս ապրող Հայրը ղրկեց զիս, ու ես կ՚ապրիմ Հօրը միջոցով, այնպէս
ալ ա՛ն որ կ՚ուտէ զիս՝ ի՛նք ալ պիտի ապրի ինձմով: 59 Ա՛յս է այն հացը՝ որ իջած է
երկինքէն: Ա՛ն որ ուտէ այս հացը՝ պիտի ապրի յաւիտեա՛ն. ո՛չ թէ ձեր հայրերուն պէս,
որոնք կերան մանանան՝ բայց մեռան»:

60 Այս բաները խօսեցաւ ժողովարանին մէջ, երբ կը սորվեցնէր Կափառնայումի մէջ:

## ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ԽՕՍՔԵՐԸ

61 Իսկ աշակերտներէն շատերը՝ երբ լսեցին՝ ըսին. «Խիստ է այդ խօսքը, ո՞վ կրնայ
մտիկ ընել զայն»: 62 Երբ Յիսուս ինքնիրեն հասկցաւ թէ իր աշակերտները կը տրտնջեն
ատոր համար, ըսաւ անոնց. «Ատիկա կը գայթակղեցնէ՞ ձեզ: 63 Հապա ի՞նչ պիտի
մտածէք, եթէ տեսնէք մարդու Որդիին բարձրանալը հոն՝ ուր նախապէս էր: 64 Հոգի՛ն է
կեանք տուողը. մարմինը օգո՛ւտ մը չունի: Այն խօսքերը որ [գ]կ՚ըսեմ ձեզի՝ Հոգի ու կեանք
են: 65 Բայց ձեր մէջ կան ոմանք՝ որ չեն հաւատար»: Որովհետեւ Յիսուս սկիզբէն գիտէր
թէ որո՛նք են անոնք՝ որ չեն հաւատար, եւ ո՛վ է ան՝ որ պիտի մատնէ զինք: 66 Ու ըսաւ.
«Ասո՛ր համար ըսի ձեզի. “Ո՛չ մէկը կրնայ գալ ինծի, եթէ իմ Հօրմէս տրուած չըլլայ
անոր□»:

67 Այս պատճառով իր աշակերտներէն շատեր [դ]հեռացան, եւ ա՛լ չէին շրջեր իրեն հետ:
68 Ուստի Յիսուս ըսաւ տասներկուքին. «Միթէ դո՞ւք ալ կ՚ուզէք երթալ»: 69 Սիմոն
Պետրոս պատասխանեց անոր. «Տէ՛ր, որո՞ւն պիտի երթանք. դո՛ւն ունիս յաւիտենական
կեանքի խօսքերը: 70 Մենք հաւատացինք ու գիտցանք թէ դո՛ւն ես Քրիստոսը՝ [ե]Աստուծոյ

---

[բ] Այսինքն՝ Մարգարէներու գիրքին

[գ] Ոմանք՝ ըսի

[դ] Կամ՝ վերադարձան

[ե] Ոմանք՝ ապրող Աստուծոյ

Որդին»: 71 Յիսուս պատասխանեց անոնց. «Ես չընտրեցի՞ ձեզ՝ տասներկուքդ. բայց
ձեզմէ մէկը չարախօս է»: 72 Ան կը խօսէր Իսկարիովտացի Սիմոնեան Յուդայի մասին,
որովհետեւ անիկա՛ էր որ պիտի մատնէր զինք, թէպէտ տասներկուքէն մէկն էր:

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ԻՐ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ

# 7

Ասկէ ետք Յիսուս կը շրջէր Գալիլեայի մէջ, քանի որ չէր ուզեր շրջիլ Հրէաստանի
մէջ, որովհետեւ Հրեաները կը ջանային սպաննել զինք:
2 Հրեաներուն Տաղաւարներու տօնը մօտ էր. 3 ուստի իր եղբայրները ըսին իրեն.
«Մեկնէ՛ ասկէ ու գնա՛ Հրէաստան, որպէսզի աշակերտնե՛րդ ալ տեսնեն քու գործերդ՝ որ
կ՚ընես: 4 Որովհետեւ ո՛չ մէկը գաղտնի կ՚ընէ որեւէ բան, երբ կը ջանայ բացորոշապէս
ճանչցնել ինքզինք. եթէ կ՚ընես այդ բաները, դուն քեզ բացայայտէ՛ աշխարհի»: 5 Քանի
որ իր եղբայրներն ալ չէին հաւատար իրեն: 6 Յիսուս ըսաւ անոնց. «Իմ ժամանակս դեռ
հասած չէ, բայց ձեր ժամանակը պատրաստ է ամէն ատեն: 7 Աշխարհը չի կրնար ատել
ձեզ, բայց կ՚ատէ զիս, որովհետեւ ես կը վկայեմ անոր մասին թէ իր գործերը չար են: 8
Դո՛ւք բարձրացէք այս տօնին. ես (դեռ) չեմ բարձրանար այս տօնին, որովհետեւ
ժամանակս դեռ լրացած չէ»: 9 Ասիկա ըսելով անոնց՝ ինք մնաց Գալիլեա:
10 Բայց երբ իր եղբայրները բարձրացան, ի՛նքն ալ բարձրացաւ տօնին. ո՛չ թէ
բացայայտօրէն, հապա՝ գաղտնի:

## ՅԻՍՈՒՍ՝ ՏԱՂԱՒԱՐՆԵՐՈՒ ՏՕՆԻՆ

11 Իսկ Հրեաները կը փնտռէին զինք տօնին ատենը, ու կ՚ըսէին. «Ո՞ւր է ան»: 12
Բազմութեան մէջ շատ տրտունջ կար անոր մասին: Ոմանք կ՚ըսէին. «Բարի մարդ է»:
Ուրիշներ կ՚ըսէին. «Ո՛չ, այլ ընդհակառակը՝ բազմութի՛ւնը կը մոլորեցնէ»: 13 Սակայն ո՛չ
մէկը բացորոշապէս կը խօսէր անոր մասին՝ Հրեաներու վախէն:
14 Իսկ երբ տօնը կէս եղաւ՝ Յիսուս բարձրացաւ տաճարը, եւ կը սորվեցնէր: 15
Հրեաները կը զարմանային ու կ՚ըսէին. «Ի՞նչպէս ասիկա գիտէ [ա]Գիրքերը, քանի բնա՛ւ
սորված չէ զանոնք»: 16 Յիսուս պատասխանեց անոնց. «Իմ ուսուցումս՝ ի՛մս չէ, հապա
զիս ղրկողի՛նն է: 17 Եթէ մէկը ուզէ գործադրել անոր կամքը, պիտի գիտնայ թէ այս
ուսուցումը Աստուծմէ՛ է, թէ ես ինձմէ կը խօսիմ: 18 Ա՛ն որ կը խօսի ինքնիրմէ՝ կը փնտռէ
ի՛ր իսկ փառքը, բայց ա՛ն որ կը փնտռէ զինք ղրկողին փառքը՝ անիկա՛ ճշմարտախօս է, եւ
անոր քով անիրաւութիւն չկայ: 19 Մովսէս չտուա՞ւ ձեզի Օրէնքը. բայց ձեզմէ ո՛չ մէկը կը
գործադրէ Օրէնքը: 20 Ինչո՞ւ կը ջանաք սպաննել զիս»: Բազմութիւնը պատասխանեց.
«Դե՛ւ կայ քու ներսդ. ո՞վ կը ջանայ սպաննել քեզ»: 21 Յիսուս պատասխանեց անոնց.
«Գործ մը ըրի, եւ բոլորդ ալ կը զարմանաք: 22 Մովսէս տուաւ ձեզի թլփատութիւնը, (որ
ո՛չ թէ Մովսէսէ էր՝ հապա նախնիքներէն,) ու մարդ կը թլփատէք Շաբաթ օրը: 23 Եթէ
մարդ կը թլփատուի Շաբաթ օրը՝ որպէսզի Մովսէսի Օրէնքը չլուծուի, կը դառնանա՞ք
ինծի դէմ՝ որ ամբողջ մարդ մը բժշկեցի Շաբաթ օրը: 24 Մի՛ դատէք երեւոյթին համեմատ,
հապա դատեցէք արդարութեա՛մբ»:

## Ի՞ՆՔՆ Է ՄԵՍԻԱՆ

25 Ուստի Երուսաղեմացիներէն ոմանք կ՚ըսէին. «Ասիկա չէ՞ ան՝ որ կը ջանան

---

[ա] Յուն.՝ գիրերը

*սպաննել: 26 Ահա՛ համարձակօրէն կը խօսի, ու ոչինչ կ՚ըսեն անոր. միթէ պետերը
գիտցա՞ն թէ ճշմա՛րտապէս ա՛յս է Քրիստոսը: 27 Սակայն մենք գիտե՛նք թէ ասիկա ուրկէ՛
է. բայց երբ Քրիստոս գայ, ո՛չ մէկը պիտի գիտնայ անոր ուրկէ՛ ըլլալը»: 28 Իսկ Յիսուս՝
սորվեցնելու ատեն՝ տաճարին մէջ աղաղակեց. «Զի՛ս ալ կը ճանչնաք, եւ ուրկէ՛ ըլլալս ալ
գիտէք: Ես ինձմէ եկած չեմ, հապա ա՛ն որ ղրկեց զիս՝ ճշմարիտ է: Դուք չէք ճանչնար
զայն. 29 բայց ես կը ճանչնամ զայն, որովհետեւ ես անկէ եմ, եւ ա՛ն ղրկեց զիս»: 30
Ուստի կը ջանային ձերբակալել զինք. բայց ո՛չ մէկը ձեռք բարձրացուց իր վրայ,
որովհետեւ իր ժամը դեռ հասած չէր: 31 Բազմութենէն շատեր հաւատացին իրեն, ու
կ՚ըսէին. «Երբ Քրիստոս գայ, միթէ աւելի՞ նշաններ պիտի ընէ՝ քան անոնք որ ասիկա
ըրաւ»:*

## ՍՊԱՍԱՒՈՐՆԵՐ ՂՐԿՈՒԵՑԱՆ՝ ՅԻՍՈՒՍԸ ՁԵՐԲԱԿԱԼԵԼՈՒ

*32 Փարիսեցիները լսեցին բազմութեան այս տրտունջը անոր մասին. եւ Փարիսեցիներն
ու քահանայապետները սպասաւորներ ղրկեցին՝ որպէսզի ձերբակալեն զայն: 33 Իսկ
Յիսուս [բ]ըսաւ. «Քիչ մը ժամանակ ալ ձեզի հետ եմ, ապա կ՚երթամ անոր՝ որ ղրկեց զիս:
34 Դուք պիտի փնտռէք զիս՝ բայց պիտի չգտնէք, եւ չէք կրնար գալ իմ եղած տեղս»: 35
Ուրեմն Հրեաները ըսին իրարու. «Ո՞ւր պիտի երթայ, որ մենք պիտի չգտնենք զինք. միթէ
[գ]հեթանոսներուն մէջ ցրուածներո՞ւն պիտի երթայ, եւ հեթանոսներո՞ւն պիտի սորվեցնէ:
36 Ի՞նչ է այն խօսքը՝ որ ըսաւ. “Դուք պիտի փնտռէք զիս բայց պիտի չգտնէք, եւ չէք
կրնար գալ իմ եղած տեղս□»:*

## ԿԵՆԱՐԱՐ ՋՈՒՐԻ ԳԵՏԵՐ

*37 Տօնին վերջին մեծ օրը՝ Յիսուս կայնած էր ու կ՚աղաղակէր. «Եթէ մէկը ծարաւ է,
թող գայ ինծի եւ խմէ: 38 Ա՛ն որ հաւատայ ինծի, կենարար ջուրի գետեր պիտի բխին անոր
փորէն, ինչպէս Գիրքը կ՚ըսէ»: 39 Ասիկա ըսաւ Հոգիին մասին՝ որ իրեն հաւատացողները
պիտի ընդունէին. որովհետեւ Սուրբ Հոգին տրուած չէր տակաւին, քանի որ Յիսուս
փառաւորուած չէր տակաւին:*

## ԲԱԺԱՆՈՒՄ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՄԷՋ

*40 Բազմութենէն շատեր՝ երբ լսեցին այս խօսքը՝ կ՚ըսէին. «Ճշմա՛րտապէս ա՛յս է
մարգարէն»: 41 Ուրիշներ կ՚ըսէին. «Ա՛յս է Քրիստոսը»: Ուրիշներ ալ կ՚ըսէին. «Միթէ
Քրիստոս Գալիլեայէ՞ն պիտի գայ: 42 Միթէ Գիրքը չ՚ը՞սեր թէ Քրիստոս պիտի գայ
Դաւիթի զարմէն ու Դաւիթի եղած գիւղէն՝ Բեթլեհէմէն»: 43 Ուստի պառակտում եղաւ
բազմութեան մէջ՝ անոր պատճառով: 44 Անոնցմէ ոմանք ուզեցին ձերբակալել զայն, բայց
ո՛չ մէկը ձեռք բարձրացուց անոր վրայ:*

## ՀՐԵԱՅ ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՆՀԱՒԱՏՈՒԹԻՒՆԸ

*45 Ուստի սպասաւորները եկան քահանայապետներուն եւ Փարիսեցիներուն քով, որոնք
ըսին անոնց. «Ինչո՞ւ հոս չբերիք զայն»: 46 Սպասաւորները պատասխանեցին. «Ո՛չ մէկը*

---

[բ] *Ոմանք՝ ըսաւ անոնց*

[գ] *Յուն.՝ Յոյներուն*

երբե՛ք խօսած է այս մարդուն պէս»: 47 Ուստի Փարիսեցիները պատասխանեցին անոնց.
«Միթէ դո՞ւք ալ մոլորեցաք: 48 Պետերէն կամ Փարիսեցիներէն մէ՛կը հաւատա՞ց անոր. 49
բայց այս բազմութիւնը՝ որ չի գիտեր Օրէնքը՝ անիծեալ է»: 50 Նիկոդեմոս ըսաւ անոնց,
(որ նախապէս՝ գիշերուան մէջ գացեր էր իրեն, եւ անոնցմէ մէկն էր.) 51 «Միթէ մեր
Օրէնքը կը դատէ՞ մարդ մը, եթէ նախապէս չլսէ զայն, եւ չգիտնայ թէ ի՛նչ կ՚ընէ»: 52
Պատասխանեցին անոր. «Միթէ դո՞ւն ալ Գալիլեայէն ես. զննէ՛ ու նայէ՛, որ Գալիլեայէն
մարգարէ չ՚ելլեր»: 53 Ապա իւրաքանչիւրը գնաց իր տունը:

## ՇՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԲՌՆՈՒԱԾ ԿԻՆԸ

# 8

Յիսուս գնաց Ձիթենիներու լեռը: 2 Երբ առտուն կանուխ դարձեալ եկաւ տաճարը՝
ամբողջ ժողովուրդը կու գար իրեն, եւ ինք՝ նստած կը սորվեցնէր անոնց: 3 Դպիրներն ու
Փարիսեցիները բերին անոր շնութեան մէջ բռնուած կին մը, եւ մէջտեղ կայնեցնելով
զայն՝ 4 ըսին իրեն. «Վարդապե՛տ, այս կինը շնութեան մէջ բռնուեցաւ՝ այս մեղքը գործած
ատեն: 5 Օրէնքին մէջ՝ Մովսէս պատուիրեց մեզի քարկոծել այսպիսիները. իսկ դո՛ւն ի՞նչ
կ՚ըսես»: 6 Ասիկա կ՚ըսէին՝ զայն փորձելու համար, որպէսզի առիթ ունենան զինք
ամբաստանելու. բայց Յիսուս՝ վար ծռած՝ մատով կը գրէր գետինին վրայ: 7 Սակայն երբ
շարունակեցին հարցնել իրեն, վեր նայեցաւ եւ ըսաւ անոնց. «Ձեզմէ անմեղ եղողը՝ առաջ
ի՛նք թող քար նետէ ատոր վրայ»: 8 Ու դարձեալ վար ծռելով՝ գետինին վրայ կը գրէր: 9
Իսկ անոնք՝ լսելով ասիկա եւ կշտամբուելով իրենց խղճմտանքէն՝ դուրս կ՚ելլէին մէկ առ
մէկ, ամենէն տարեցներէն սկսեալ՝ մինչեւ յետինները. ու Յիսուս մինակ մնաց, եւ կինը՝
մէջտեղ կայնած: 10 Յիսուս վեր նայելով ու կնոջմէն զատ ո՛չ մէկը տեսնելով՝ ըսաւ անոր.
«Կի՛ն, ո՞ւր են անոնք՝ որ կ՚ամբաստանէին քեզ. ո՞չ մէկը դատապարտեց քեզ»: 11 Ան ալ
ըսաւ. «Ո՛չ մէկը, Տէ՛ր»: Յիսուս ըսաւ անոր. «Ե՛ս ալ չեմ դատապարտեր քեզ. գնա՛, եւ
ասկէ ետք ա՛լ մի՛ մեղանչեր»:

## ՅԻՍՈՒՍ՝ ԱՇԽԱՐՀԻ ԼՈՅՍԸ

12 Յիսուս դարձեալ խօսեցաւ անոնց եւ ըսաւ. «Ե՛ս եմ աշխարհի լոյսը. ա՛ն որ կը
հետեւի ինծի՝ պիտի չքալէ խաւարի մէջ, հապա պիտի ունենայ կեանքի լոյսը»: 13 Իսկ
Փարիսեցիները ըսին անոր. «Դո՛ւն կը վկայես քու մասիդ. քու վկայութիւնդ ճշմարիտ չէ»:
14 Յիսուս պատասխանեց անոնց. «Թէպէտ ե՛ս կը վկայեմ իմ մասիս, իմ վկայութիւնս
ճշմարիտ է, որովհետեւ գիտեմ ուրկէ՛ եկայ եւ ո՛ւր կ՚երթամ. իսկ դուք չէք գիտեր ուրկէ՛
կու գամ կամ ո՛ւր կ՚երթամ: 15 Դուք կը դատէք մարմինի՛ն համաձայն. ես ո՛չ մէկը կը
դատեմ: 16 Նոյնիսկ եթէ դատեմ՝ իմ դատաստանս ճշմարիտ է, որովհետեւ ես մինակ չեմ,
հապա՝ ե՛ս եւ Հա՛յրը՝ որ ղրկեց զիս: 17 Ձեր Օրէնքին մէջ ալ գրուած է թէ երկու մարդու
վկայութիւնը ճշմարիտ է: 18 Ե՛ս եմ՝ որ կը վկայեմ իմ մասիս, ու Հա՛յրն ալ՝ որ ղրկեց զիս՝
կը վկայէ իմ մասիս»: 19 Ուստի ըսին անոր. «Ո՞ւր է քու Հայրդ»: Յիսուս պատասխանեց.
«Ո՛չ զիս կը ճանչնաք, եւ ո՛չ՝ իմ Հայրս. եթէ ճանչնայիք զիս, պիտի ճանչնայիք նաեւ իմ
Հայրս»:
20 Յիսուս ըսաւ այս խօսքերը՝ գանձատունը, երբ կը սորվեցնէր տաճարին մէջ, ու ո՛չ
մէկը ձերբակալեց զայն, որովհետեւ դեռ անոր ժամը հասած չէր:

## ՉԷՔ ԿՐՆԱՐ ԵՐԹԱԼ ՀՈՆ՝ ՈՒՐ ԵՍ Կ՚ԵՐԹԱՄ

21 Յիսուս դարձեալ ըսաւ անոնց. «Ես կ՚երթամ՝ ու պիտի փնտռէք զիս, եւ պիտի

*մեռնիք ձեր մեղքերուն մէջ. ո՛ւր ես կ՚երթամ ՝ դուք չէք կրնար գալ»: 22 Ուրեմն
Հրեաները կ՚ըսէին. «Միթէ ինքզի՞նք պիտի սպաննէ, քանի որ կ՚ըսէ. “Ո՛ւր ես կ՚երթամ՝
դուք չէք կրնար գալ□»: 23 Ըսաւ անոնց. «Դուք վարէն էք, ես վերէն եմ. դուք այս
աշխարհէն էք, ես այս աշխարհէն չեմ: 24 Ուստի ըսի ձեզի թէ պիտի մեռնիք ձեր
մեղքերուն մէջ. արդարեւ եթէ չհաւատաք թէ ես եմ ՝ պիտի մեռնիք ձեր մեղքերուն մէջ»:
25 Ուրեմն ըսին անոր. «Դուն ո՞վ ես»: Յիսուս ըսաւ անոնց. «Ի՛նչ որ սկիզբէն կ՚ըսեմ
ձեզի: 26 Շատ բաներ ունիմ ձեր մասին խօսելու եւ դատելու. բայց ա՛ն որ ղրկեց զիս՝
ճշմարտախօս է, ու ես ի՛նչ որ լսեցի իրմէ՝ զա՛յն կը խօսիմ աշխարհի մէջ»: 27 Անոնք
չհասկցան թէ Հօրը մասին կը խօսէր իրենց:*

*28 Ուստի Յիսուս ըսաւ անոնց. «Երբ բարձրացնէք մարդու Որդին, այն ատեն պիտի
գիտնաք թէ ես եմ, եւ թէ ես ինձմէ ոչի՛նչ կ՚ընեմ, հապա կը խօսիմ այս բաները՝ ինչպէս
Հայրը սորվեցուց ինծի: 29 Ու զիս ղրկողը ինծի հետ է. Հայրը մինակ չթողուց զիս,
որովհետեւ ես ամէն ատեն կ՚ընեմ իրեն հաճելի եղած բաները»:*

## ԱԶԱՏ ՄԱՐԴԻԿ ԵՒ ԳԵՐԻՆԵՐ

*30 Երբ այսպէս խօսեցաւ՝ շատ մարդիկ հաւատացին իրեն: 31 Ուստի Յիսուս ըսաւ իրեն
հաւատացող Հրեաներուն. «Եթէ իմ խօսքիս մէջ մնաք, ճշմա՛րտապէս իմ աշակերտներս
կ՚ըլլաք. 32 ու ճշմարտութիւնը պիտի գիտնաք, եւ այդ ճշմարտութիւնը պիտի ազատէ
ձեզ»: 33 Պատասխանեցին իրեն. «Մենք Աբրահամի զարմն ենք, ու երբե՛ք ստրուկ չենք
եղած ոեւէ մէկուն: Դուն ի՞նչպէս կ՚ըսես. “Ազատ պիտի ըլլաք□»: 34 Յիսուս
պատասխանեց անոնց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Ո՛վ որ
մեղք կը գործէ, անիկա մեղքին ստրուկն է□: 35 Եւ ստրուկը տան մէջ յաւիտեան չի
կենար, բայց որդին յաւիտեան կը կենայ: 36 Ուրեմն եթէ Որդին ազատէ ձեզ, ի՛րապէս
ազատ պիտի ըլլաք: 37 Գիտե՛մ թէ Աբրահամի զարմն էք. բայց կը ջանաք սպաննել զիս,
որովհետեւ իմ խօսքս տեղ չունի ձեր մէջ: 38 Ես ինչ որ տեսայ իմ Հօրս քով՝ զա՛յն կը
խօսիմ, ու դուք ալ ինչ որ տեսաք ձեր հօր քով՝ զա՛յն կ՚ընէք»: 39 Պատասխանեցին անոր.
«Մեր հայրը՝ Աբրահա՛մն է»: Յիսուս ըսաւ անոնց. «Եթէ Աբրահամի որդիները ըլլայիք,
Աբրահամի՛ գործերը պիտի ընէիք: 40 Բայց հիմա կը ջանաք սպաննել զիս, այնպիսի
մարդ մը՝ որ խօսեցաւ ձեզի ճշմարտութիւնը, որ լսեցի Աստուծմէ. Աբրահամ չըրաւ այդ
բանը: 41 Դուք կ՚ընէք ձե՛ր հօր գործերը»: Անոնք ալ ըսին անոր. «Մենք պոռնկութենէ
ծնած չենք. մենք ունինք մէ՛կ Հայր, որ Աստուած է»: 42 Յիսուս ըսաւ անոնց. «Եթէ
Աստուած ըլլար ձեր Հայրը՝ պիտի սիրէիք զիս, որովհետեւ ես Աստուծմէ՛ ելայ ու եկայ. ո՛չ
թէ ես ինձմէ եկայ, հապա ի՛նք ղրկեց զիս: 43 Ինչո՞ւ չէք հասկնար իմ խօսածս. քանի որ
չէք կրնար մտիկ ընել իմ խօսքս: 44 Դուք ձեր հօրմէն՝ Չարախօսէն էք, եւ կ՚ուզէք ձեր
հօ՛ր ցանկութիւնները գործադրել. ան սկիզբէն մարդասպան էր, ու ճշմարտութեան մէջ
չկեցաւ՝ որովհետեւ անոր մէջ ճշմարտութիւն չկայ: Երբ ան սուտ խօսի՝ կը խօսի բո՛ւն իր
էութենէ՛ն, քանի որ ան ստախօս է՝ եւ [ա]ստուտին հայրը: 45 Բայց որովհետեւ ես կը խօսիմ
ճշմարտութիւնը՝ չէք հաւատար ինծի: 46 Ձեզմէ ո՞վ կրնայ կշտամբել զիս՝ մեղքի համար.
իսկ եթէ ես կը խօսիմ ճշմարտութիւնը, ինչո՞ւ չէք հաւատար ինծի: 47 Ա՛ն որ Աստուծմէ է՝
մտիկ կ՚ընէ Աստուծոյ խօսքերը. ուստի դուք մտիկ չէք ըներ, քանի որ Աստուծմէ չէք»:*

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ԱԲՐԱՀԱՄ

---

[ա] *Յուն.՝ անոր*

48 Հրեաները պատասխանեցին անոր. «Մենք ճիշդ չե՞նք ըսեր թէ դուն Սամարացի ես,
ու դեւ կայ քու ներսդ»: 49 Յիսուս պատասխանեց. «Իմ ներսս դեւ չկայ, հապա ես կը
պատուեմ իմ Հայրս. բայց դուք՝ կ՚անպատուէ՛ք զիս: 50 Իսկ ես չեմ փնտռեր իմ փառքս:
Կա՛յ մէկը՝ որ կը փնտռէ ու կը դատէ: 51 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ
ձեզի. “Եթէ մէկը պահէ իմ խօսքս, մահ պիտի չտեսնէ յաւիտեա՛ն□»: 52 Ուստի Հրեաները
ըսին անոր. «Հիմա գիտցանք թէ դեւ կայ քու ներսդ: Աբրահամ մեռաւ, ու մարգարէներն
ալ, իսկ դուն կ՚ըսես. “Եթէ մէկը պահէ իմ խօսքս՝ մահ պիտի չհամտեսէ յաւիտեա՛ն□: 53
Միթէ դուն աւելի՞ մեծ ես՝ քան մեր հայրը՝ Աբրահամ, որ մեռաւ, ու մարգարէներն ալ
մեռան. դուն քեզ ո՞վ կ՚ընես»: 54 Յիսուս պատասխանեց. «Եթէ ե՛ս զիս փառաւորեմ՝ իմ
փառքս ոչի՛նչ է: Իմ Հա՛յրս է՝ որ կը փառաւորէ զիս, որուն համար դուք կ՚ըսէք թէ “[բ]մեր
Աստուածն է□, 55 բայց չէք ճանչնար զայն: Իսկ ես կը ճանչնա՛մ զայն, ու եթէ ըսէի թէ
“չեմ ճանչնար զայն□, ձեզի պէս ստախօս կ՚ըլլայի. մինչդեռ ես կը ճանչնամ զայն, եւ կը
պահեմ անոր խօսքը: 56 Ձեր հայրը՝ Աբրահամ՝ ցանկաց տեսնել իմ օրս, ու տեսաւ եւ
ցնծաց»: 57 Իսկ Հրեաները ըսին անոր. «Դուն տակաւին յիսուն տարեկան չես.
Աբրահա՞մն ալ տեսար»: 58 Յիսուս ըսաւ անոնց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը
յայտարարեմ ձեզի. “Աբրահամի ըլլալէն առաջ՝ ես եմ□»: 59 Ուստի քարեր վերցուցին՝
որպէսզի նետեն անոր վրայ. բայց Յիսուս ինքզինք ծածկեց անոնց աչքերէն, ու անոնց
մէջէն անցնելով՝ դուրս ելաւ տաճարէն, եւ այսպէս գնաց:

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԲԺՇԿԷ ԾՆՈՒՆԴՈՎ ԿՈՅՐԸ

# 9

Երբ կ՚անցնէր՝ տեսաւ մարդ մը, կոյր ծնած: 2 Իր աշակերտները հարցուցին իրեն.
«Ռաբբի՛, ո՞վ մեղանչեց, ասիկա՞ թէ անոր ծնողները, որ ան կոյր ծնաւ»: 3 Յիսուս
պատասխանեց. «Ո՛չ ասիկա մեղանչած է, ո՛չ ալ անոր ծնողները, հապա՝ որպէսզի
Աստուծոյ գործերը յայտնաբերուին իր վրայ: 4 Մինչ ցերեկ է, պէտք է որ գործեմ զիս
ղրկողին գործերը. գիշերը կու գայ, երբ ո՛չ մէկը կրնայ գործել: 5 Այնքան ատեն որ ես
աշխարհի մէջ եմ՝ աշխարհի լոյսն եմ»: 6 Երբ ըսաւ ասիկա՝ թքնեց գետին, կաւ շինեց
թուքով, այդ կաւով ծեփեց կոյրին աչքերը 7 եւ ըսաւ անոր. «Գնա՛, լուացուէ՛ Սելովամի
աւազանին մէջ» (որ կը թարգմանուի՝ ղրկուած): Ան ալ գնաց եւ լուացուեցաւ, եկաւ՝ ու կը
տեսնէր: 8 Իսկ դրացիները, եւ անոնք որ նախապէս տեսած էին զինք՝ թէ “[ա]կոյր էր,
կ՚ըսէին. «Ասիկա չէ՞ր ան՝ որ կը նստէր ու կը մուրար»: Ոմանք կ՚ըսէին. «Անիկա՛ է»: 9
Ուրիշներ կ՚ըսէին. «Անոր նման մէկն է»: Իսկ ինք կ՚ըսէր. «Ե՛ս եմ»: 10 Ուրեմն ըսին
իրեն. «Հապա ի՞նչպէս աչքերդ բացուեցան»: 11 Ինք պատասխանեց. «Յիսուս կոչուած
մարդ մը կաւ շինեց, ծեփեց աչքերս ու ըսաւ ինծի. “Գնա՛ Սելովամի աւազանը եւ
լուացուէ՛ □: Ես ալ գացի, լուացուեցայ, ու կը տեսնեմ»: 12 Ուստի ըսին իրեն. «Ո՞ւր է
ան»: Ըսաւ անոնց. «Չեմ գիտեր»:

## ՓԱՐԻՍԵՑԻՆԵՐԸ ԿԸ ՀԱՐՑԱՔՆՆԵՆ ԲՈՒԺՈՒՈՂԸ

13 Փարիսեցիներուն տարին զայն՝ որ ժամանակին կոյր էր, 14 ու Շաբաթ օր էր՝ երբ
Յիսուս շինեց կաւը եւ բացաւ անոր աչքերը: 15 Ուստի Փարիսեցիներն ալ դարձեալ կը

---

[բ] Ոմանք՝ ձեր

[ա] Ոմանք՝ մուրացկան

*հարցնէին իրեն թէ ի՛նչպէս [բ]աչքերը բացուեցան": Ան ալ ըսաւ անոնց. «Կաւ դրաւ
աչքերուս վրայ, ու լուացուեցայ եւ կը տեսնեմ»: 16 Ուստի Փարիսեցիներէն ոմանք
կ՚ըսէին. «Այդ մարդը Աստուծմէ չէ, որովհետեւ չի պահեր Շաբաթ օրը»: Ուրիշներ
կ՚ըսէին. «Մեղաւոր մարդ մը ի՞նչպէս կրնայ ընել այսպիսի նշաններ». եւ պառակտում
եղաւ անոնց մէջ: 17 Դարձեալ ըսին կոյրին. «Դուն ի՞նչ կ՚ըսես անոր մասին՝ որ բացաւ
աչքերդ»: Ան ալ ըսաւ. «Մարգարէ՛ մըն է»: 18 Իսկ Հրեաները չէին հաւատար թէ ան կոյր
էր եւ աչքերը բացուեցան, մինչեւ որ կանչեցին այդ աչքերը բացուած մարդուն ծնողները,
19 ու հարցուցին անոնց. «Ա՞յս է ձեր որդին, որուն մասին դուք կ՚ըսէք թէ կոյր ծնաւ.
հապա ի՞նչպէս հիմա կը տեսնէ»: 20 Անոր ծնողները պատասխանեցին անոնց. «Գիտենք
թէ ա՛յս է մեր որդին, եւ թէ ինք կոյր ծնաւ: 21 Բայց հիմա ի՛նչ կերպով կը տեսնէ՝ չենք
գիտեր, կամ թէ ո՛վ բացաւ ատոր աչքերը՝ մենք չենք գիտեր. ինք չափահաս է, իրե՛ն
հարցուցէք, ի՛նք թող խօսի իր մասին»: 22 Անոր ծնողները ըսին ասիկա, որովհետեւ կը
վախնային Հրեաներէն. քանի որ Հրեաները արդէն միաձայնած էին, որ եթէ մէկը դաւանի
զայն որպէս Քրիստոս՝ վռնտուի ժողովարանէն: 23 Ուստի անոր ծնողները ըսին. «Ինք
չափահաս է, իրե՛ն հարցուցէք»: 24 Ուրեմն կրկին կանչեցին այդ մարդը՝ որ կոյր էր, եւ
ըսին անոր. «Փա՛ռք տուր Աստուծոյ. մենք գիտե՛նք թէ այդ մարդը մեղաւոր է»: 25 Ան ալ
պատասխանեց. «Չեմ գիտեր թէ մեղաւոր է՝ թէ ոչ. մէ՛կ բան գիտեմ, թէ կոյր էի՝ ու հիմա
կը տեսնեմ»: 26 Դարձեալ ըսին անոր. «Ի՞նչ ըրաւ քեզի, ի՞նչպէս բացաւ աչքերդ»: 27
Պատասխանեց անոնց. «Արդէ՛ն ըսի ձեզի, ու չլսեցիք. ինչո՞ւ կ՚ուզէք դարձեալ լսել. միթէ
դո՞ւք ալ կ՚ուզէք ըլլալ անոր աշակերտները»: 28 Իսկ անոնք հեգնելով զայն՝ ըսին. «Դո՛ւն
ես անոր աշակերտը, իսկ մենք՝ Մովսէսի՛ աշակերտներն ենք: 29 Մենք գիտե՛նք թէ
Աստուա՛ծ խօսեցաւ Մովսէսի. բայց չենք գիտեր թէ ասիկա ուրկէ՛ է»: 30 Մարդը
պատասխանեց անոնց. «Ա՛յդ է զարմանալին, որ դուք չէք գիտեր թէ ուրկէ՛ է ան, թէպէտ
ի՛նք բացաւ իմ աչքերս: 31 Գիտենք թէ Աստուած մտիկ չ՚ըներ մեղաւորներուն. բայց եթէ
մէկը աստուածապաշտ ըլլայ եւ անոր կամքը գործադրէ՝ մտիկ կ՚ընէ անոր: 32 Դարերու
սկիզբէն ի վեր լսուած չէ, որ մէկը բացած ըլլայ ծնունդով կոյրի մը աչքերը: 33 Եթէ
ասիկա Աստուծմէ չըլլար, ոչի՛նչ կրնար ընել»: 34 Պատասխանեցին անոր. «Դուն
ամբողջովին մեղքերու մէջ ծնած ես, ու մեզի՞ կը սորվեցնես», եւ վտարեցին զայն:*

## *ՀՈԳԵԿԱՆ ԿՈՒՐՈՒԹԻՒՆ*

*35 Յիսուս լսեց թէ վտարեցին զայն. երբ գտաւ զայն՝ ըսաւ անոր. «Դուն կը հաւատա՞ս
Աստուծոյ Որդիին»: 36 Ան պատասխանեց. «Տէ՛ր, ո՞վ է՝ որ հաւատամ անոր»: 37 Յիսուս
ըսաւ անոր. «Թէ՛ տեսար զայն, թէ՛ ալ ի՛նքն է քեզի հետ խօսողը»: 38 Ան ալ ըսաւ. «Կը
հաւատա՛մ, Տէ՛ր», ու երկրպագեց անոր: 39 Յիսուս ըսաւ. «Ես այս աշխարհը եկայ՝
դատաստանի համար, որպէսզի չտեսնողները՝ տեսնեն, իսկ տեսնողները՝ կուրանան»:*

*40 Փարիսեցիներէն ոմանք, որ իրեն հետ էին, լսելով ասիկա՝ ըսին իրեն. «Միթէ մե՞նք
ալ կոյր ենք»: 41 Յիսուս ըսաւ անոնց. «Եթէ կոյր ըլլայիք՝ մեղք չէիք ունենար. բայց հիմա
կ՚ըսէք. "Կը տեսնե՛նք□. ուրեմն ձեր մեղքը կը մնայ ձեր վրայ»:*

## *ՀՈՎԻՒԻՆ ԱՌԱԿԸ*

# 10

*«Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. "Ա՛ն որ դռնէն չի մտներ
ոչխարներուն բակը՝ հապա ուրիշ տեղէ կը բարձրանայ, անիկա գող եւ աւազակ է. 2 բայց*

---

[բ] *Յուն.՝ տեսողութիւնը վերստացաւ*

*ա՛ն որ դռնէն կը մտնէ՝ ոչխարներուն հովիւն է□: 3 Դռնապանը կը բանայ անոր, եւ ոչխարները կը լսեն անոր ձայնը. իր ոչխարները կը կանչէ իրենց անունով ու դուրս կը հանէ զանոնք: 4 Երբ հանէ իր ոչխարները՝ կ՚երթայ անոնց առջեւէն, ու ոչխարները կը հետեւին իրեն՝ որովհետեւ կը ճանչնան իր ձայնը: 5 Սակայն չեն հետեւիր օտարի մը՝ հապա կը փախչին անկէ, որովհետեւ չեն ճանչնար օտարներու ձայնը»:*

*6 Յիսուս ըսաւ անոնց այս առակը, բայց անոնք չէին հասկնար թէ ի՛նչ էր՝ որ կը խօսէր իրենց:*

## ՅԻՍՈՒՍ՝ ԲԱՐԻ ՀՈՎԻՒԸ

*7 Ուրեմն Յիսուս դարձեալ ըսաւ անոնց. «Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Ե՛ս եմ ոչխարներուն դուռը□: 8 Բոլոր անոնք՝ որ եկան ինծմէ առաջ, գող եւ աւազակ էին, բայց ոչխարները մտիկ չըրին անոնց: 9 “Ե՛ս եմ դուռը□. եթէ մէկը ներս մտնէ ինծմէ՝ պիտի փրկուի. պիտի մտնէ ու ելլէ, եւ արօտ գտնէ: 10 Գողը ուրիշ բանի համար չի գար, բայց միայն՝ գողնալու, սպաննելու եւ կորսնցնելու համար: Ես եկայ որ կեա՛նք ունենան, եւ ճոխութեա՛մբ ունենան: 11 “Ե՛ս եմ բարի հովիւը□. բարի հովիւը կ՚ընծայէ իր անձը ոչխարներուն համար: 12 Բայց վարձկանը՝ որ հովիւ չէ եւ ոչխարները իր սեփականը չեն, երբ տեսնէ թէ գայլը կու գայ՝ կը թողու ոչխարները ու կը փախչի. եւ գայլը կը յափշտակէ ոչխարները ու կը ցրուէ զանոնք: 13 Եւ վարձկանը կը փախչի՝ որովհետեւ ինք վարձկան է, ու չի հոգար ոչխարները: 14 “Ե՛ս եմ բարի հովիւը□. կը ճանչնամ իմիններս ու կը ճանչցուիմ իմիններէս: 15 Ինչպէս Հայրը կը ճանչնայ զիս՝ ես ալ կը ճանչնամ Հայրը, եւ իմ անձս կ՚ընծայեմ ոչխարներուն համար: 16 Ուրիշ ոչխարներ ալ ունիմ՝ որոնք այս բակէն չեն. զանո՛նք ալ պէտք է բերեմ. ու իմ ձայնս պիտի լսեն, եւ ըլլան մէ՛կ հօտ ու մէ՛կ հովիւ: 17 Իմ Հայրս կը սիրէ զիս՝ քանի որ ես իմ անձս կ՚ընծայեմ, որպէսզի դարձեալ առնեմ զայն: 18 Ո՛չ մէկը կ՚առնէ զայն ինծմէ, հապա ե՛ս ինծմէ կ՚ընծայեմ զայն: Իշխանութիւն ունիմ ընծայելու զայն, եւ իշխանութիւն ունիմ դարձեալ առնելու զայն. այս պատուէրը ստացայ իմ Հօրմէս»:*

*19 Այս խօսքերուն համար՝ դարձեալ պառակտում եղաւ Հրեաներուն մէջ: 20 Անոնցմէ շատեր կ՚ըսէին. «Դե՛ւ կայ անոր մէջ, ու խելագարած է. ինչո՞ւ մտիկ կ՚ընէք անոր»: 21 Ուրիշներ կ՚ըսէին. «Այս խօսքերը դիւահարի խօսքեր չեն. միթէ դեւը կրնա՞յ բանալ կոյրերուն աչքերը»:*

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ՄԵՐԺՈՒԻ ԻՐԵՆՆԵՐԷՆ

*22 Այդ ատեն Երուսաղէմի մէջ Նաւակատիքի տօնը [ա]կը կատարուէր, ու ձմեռ էր. 23 Յիսուս կը քալէր տաճարին մէջ՝ Սողոմոնի սրահը: 24 Ուստի Հրեաները շրջապատեցին զինք եւ ըսին իրեն. «Մինչեւ ե՞րբ պիտի մտատանջես մեզ. եթէ Քրիստոսը դո՛ւն ես՝ բացորոշապէս ըսէ՛ մեզի»: 25 Յիսուս պատասխանեց անոնց. «Ըսի՛ ձեզի, ու չէք հաւատար: Այն գործերը՝ որ ես կ՚ընեմ իմ Հօրս անունով, անո՛նք կը վկայեն իմ մասին: 26 Բայց դուք չէք հաւատար՝ որովհետեւ իմ ոչխարներէս չէք, [բ]ինչպէս ըսի ձեզի: 27 Իմ ոչխարներս կը լսեն իմ ձայնս, ես ալ կը ճանչնամ զանոնք, եւ կը հետեւին ինծի: 28 Ես կու տամ անոնց յաւիտենական կեանքը, ու յաւիտեա՛ն պիտի չկորսուին, եւ ո՛չ մէկը պիտի*

---

[ա] *Յուն.՝ կ՚ըլլար*

[բ] *Ոմանք չունին*

*յափշտակէ զանոնք իմ ձեռքէս: 29 Իմ Հայրս՝ որ ինծի տուաւ զանոնք՝ բոլորէն մեծ է, ու*
*ո՛չ մէկը կրնայ յափշտակել իմ Հօրս ձեռքէն: 30 Ես եւ Հայրը մէկ ենք»:*

*31 Ուստի Հրեաները դարձեալ քարեր վերցուցին՝ որպէսզի քարկոծեն զինք: 32 Յիսուս*
*պատասխանեց անոնց. «Շատ բարի գործեր ցոյց տուի ձեզի՝ իմ Հօրմէս. անոնցմէ ո՞ր*
*գործին համար կը քարկոծէք զիս»: 33 Հրեաները պատասխանեցին անոր. «Քեզ չենք*
*քարկոծեր բարի գործի համար, հապա՝ հայհոյութեան համար. որովհետեւ դո՛ւն՝ որ մարդ*
*ես, դուն քեզ Աստուա՛ծ կ՚ընես»: 34 Յիսուս պատասխանեց անոնց. «Միթէ ձեր Օրէնքին*
*մէջ գրուած չէ՞. “Ես ըսի. "Դուք աստուածներ էք"□: 35 Եթէ աստուածներ կը կոչէ անոնք՝*
*որոնց տրուեցաւ Աստուծոյ խօսքը, (ու կարելի չէ որ այդ գրուածը աւրուի,) 36 հապա*
*զայն՝ որ Հայրը սրբացուց եւ աշխարհ ղրկեց, դուք ի՞նչպէս կ՚ըսէք անոր. “Կը հայհոյե՛ս□,*
*որովհետեւ ըսի. “Աստուծոյ Որդի եմ□: 37 Եթէ չեմ ըներ իմ Հօրս գործերը՝ մի՛ հաւատաք*
*ինծի: 38 Իսկ եթէ կ՚ընեմ, թէպէտ չէք հաւատար ինծի՝ գոնէ գործերո՛ւն հաւատացէք,*
*որպէսզի գիտնաք եւ [գ]հաւատաք թէ Հայրը իմ մէջս է, ու ես՝ անոր մէջ»:*

*39 Դարձեալ կը ջանային ձերբակալել զայն. բայց գնաց անոնց ձեռքէն, 40 եւ դարձեալ*
*մեկնեցաւ Յորդանանի միւս կողմը, այն տեղը՝ ուր Յովհաննէս նախապէս կը մկրտէր, ու*
*մնաց հոն: 41 Շատեր գացին անոր եւ ըսին. «Իրա՛ւ Յովհաննէս նշա՛ն մը չըրաւ. 42 բայց*
*ի՛նչ որ Յովհաննէս ըսաւ ասոր մասին՝ ամէնը ճշմարիտ էր»: Ու հոն շատեր հաւատացին*
*անոր:*

## ՂԱԶԱՐՈՍԻ ՄԱՀԸ

# 11

*Մարիամի եւ անոր քրոջ՝ Մարթայի գիւղէն, Բեթանիայէն, Ղազարոս անունով մէկը*
*հիւանդ էր: 2 (Ասիկա այն Մարիամն էր՝ որ օծեց Տէրը օծանելիքով ու սրբեց անոր ոտքերը*
*իր մազերով. անոր եղբայրը՝ Ղազարոս հիւանդ էր:) 3 Ուրեմն իր քոյրերը մարդ ղրկեցին*
*անոր եւ ըսին. «Տէ՛ր, ահա՛ ան՝ որ դուն կը սիրես՝ հիւանդ է»: 4 Երբ Յիսուս լսեց՝ ըսաւ.*
*«Այս հիւանդութիւնը մահուան համար չէ՝ հապա Աստուծոյ փառքին համար, որպէսզի*
*Աստուծոյ Որդին փառաւորուի անով»: 5 Արդարեւ Յիսուս կը սիրէր Մարթան եւ անոր*
*քոյրն ու Ղազարոսը: 6 Ուրեմն երբ լսեց թէ հիւանդ է, եղած տեղը երկու օր ալ մնաց. 7*
*յետոյ ըսաւ աշակերտներուն. «Եկէ՛ք, դարձեալ Հրէաստան երթանք»: 8 Աշակերտները*
*ըսին իրեն. «Ռաբբի՛, Հրեաները հի՛մա կը փնտռէին քեզ՝ քարկոծելու համար, ու դա՞րձեալ*
*հոն կ՚երթաս»: 9 Յիսուս պատասխանեց. «Օրը տասներկու ժամ չէ՞: Եթէ մէկը ցերեկը*
*քալէ՝ չի սայթաքիր, որովհետեւ այս աշխարհի լոյսը կը տեսնէ. 10 բայց եթէ մէկը*
*գիշերուան մէջ քալէ՝ կը սայթաքի, որովհետեւ իրեն հետ լոյս չկայ»: 11 Այս բաները*
*խօսելէ ետք՝ ըսաւ անոնց. «Ղազարոս՝ մեր բարեկամը՝ քնացած է. բայց կ՚երթա՛մ՝*
*որպէսզի արթնցնեմ զայն»: 12 Իր աշակերտները ըսին. «Տէ՛ր, եթէ քնացած է՝ պիտի*
*առողջանայ»: 13 Յիսուս կը խօսէր անոր մահուան մասին, բայց անոնք կը կարծէին թէ*
*քունո՛վ հանգստանալուն մասին կը խօսէր: 14 Այն ատեն Յիսուս բացորոշապէս ըսաւ*
*անոնց. «Ղազարոս մեռաւ. 15 ու ես ուրախ եմ ձեզի համար՝ որ հոն չէի, որպէսզի դուք*
*հաւատաք. բայց եկէ՛ք՝ երթանք անոր»: 16 Թովմաս, որ Երկուորեակ կը կոչուէր, ըսաւ*
*աշակերտակիցներուն. «Մե՛նք ալ երթանք՝ որպէսզի մեռնինք անոր հետ»:*

## ՅԻՍՈՒՍ՝ ՅԱՐՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԿԵԱՆՔԸ

*17 Երբ Յիսուս եկաւ, գտաւ որ ան արդէն չորս օրէ ի վեր գերեզմանը դրուած էր: 18*

---

[գ] *Ոմանք՝ ճանչնաք*

*Բեթանիա Երուսաղէմի մօտ էր՝ տասնհինգ ասպարէզի չափ. 19 եւ Հրեաներէն շատեր
եկած էին Մարթայի ու Մարիամի, որպէսզի սփոփեն զանոնք իրենց եղբօր համար: 20
Ուստի՝ երբ Մարթա լսեց թէ Յիսուս կու գայ՝ գնաց դիմաւորելու զայն. բայց Մարիամ
նստած էր տան մէջ: 21 Մարթա ըսաւ Յիսուսի. «Տէ՛ր, եթէ հոս ըլլայիր, եղբայրս չէր
մեռներ. 22 Բայց գիտեմ թէ հիմա ալ՝ դուն ի՛նչ որ խնդրես Աստուծմէ, Աստուած պիտի
տայ քեզի»: 23 Յիսուս ըսաւ անոր. «Եղբայրդ յարութիւն պիտի առնէ»: 24 Մարթա ըսաւ
անոր. «Գիտեմ թէ յարութեան ժամանակը՝ վերջին օրը՝ յարութիւն պիտի առնէ»: 25
Յիսուս ըսաւ անոր. «Ե՛ս եմ յարութիւնն ու կեանքը: Ա՛ն որ կը հաւատայ ինծի, թէեւ մեռնի՝
պիտի ապրի. 26 Եւ ո՛վ որ կ’ապրի եւ կը հաւատայ ինծի, յաւիտեա՛ն պիտի չմեռնի: Դուն
կը հաւատա՞ս ասոր»: 27 Ըսաւ անոր. «Այո՛, Տէ՛ր, ես կը հաւատամ թէ դո՛ւն ես Քրիստոսը՝
Աստուծոյ Որդին, որ աշխարհ պիտի գար»:*

## ՅԻՍՈՒՍ ԿՈՒ ԼԱՅ

*28 Երբ ըսաւ ասիկա՝ գնաց, ու ծածկաբար կանչեց իր քոյրը՝ Մարիամը, ըսելով.
«Վարդապետը եկած է, եւ կը կանչէ քեզ»: 29 Երբ ան լսեց՝ շուտով ոտքի ելաւ ու եկաւ
անոր քով: 30 Յիսուս դեռ եկած չէր գիւղը, հապա այն տեղն էր՝ ուր Մարթա դիմաւորեց
զինք: 31 Բայց Հրեաները, որ տան մէջ էին անոր հետ եւ կը սփոփէին զայն, երբ տեսան
թէ Մարիամ շուտով կանգնեցաւ ու գնաց, իրենք ալ հետեւեցան անոր՝ ըսելով.
«Գերեզմանը կ’երթայ՝ որպէսզի հոն լայ»: 32 Իսկ Մարիամ, երբ հասաւ Յիսուսի եղած
տեղը ու տեսաւ զինք, անոր ոտքը իյնալով՝ ըսաւ անոր. «Տէ՛ր, եթէ հոս ըլլայիր՝ եղբայրս
չէր մեռներ»: 33 Ուրեմն երբ Յիսուս տեսաւ զայն՝ որ կու լար, եւ անոր հետ եկող
Հրեաները՝ որոնք կու լային, սրդողեցաւ իր հոգիին մէջ ու վրդովեցաւ, 34 եւ ըսաւ. «Ո՞ւր
դրած էք զայն»: Ըսին իրեն. «Տէ՛ր, եկո՛ւր ու տե՛ս»: 35 Յիսուս լացաւ: 36 Ուստի
Հրեաները կ’ըսէին. «Նայեցէ՛ք, ո՜րչափ կը սիրէր զայն»: 37 Անոնցմէ ոմանք ալ կ’ըսէին.
«Ասիկա՝ որ կոյրին աչքերը բացաւ, չէ՞ր կրնար այնպէս ընել՝ որ ա՛յս ալ չմեռնէր»:*

## ՂԱԶԱՐՈՍ ԿԵԱՆՔԻ ԿԸ ԲԵՐՈՒԻ

*38 Ուրեմն Յիսուս՝ դարձեալ սրդողելով ինքնիր մէջ՝ գնաց գերեզման. ան քարայր մըն
էր, որուն վրայ քար մը դրուած էր: 39 Յիսուս ըսաւ. «Վերցուցէ՛ք այդ քարը»: Մեռելին
քոյրը՝ Մարթա՝ ըսաւ անոր. «Տէ՛ր, արդէն նեխած պիտի ըլլայ, որովհետեւ չորս օրուան
է»: 40 Յիսուս ըսաւ անոր. «Քեզի չըսի՞ թէ պիտի տեսնես Աստուծոյ փառքը՝ եթէ
հաւատաս»: 41 Ուստի վերցուցին [ա]քարը: Յիսուս բարձրացուց իր աչքերը եւ ըսաւ. «Հա՛յր,
շնորհակալ եմ քեզմէ՝ որ լսեցիր զիս: 42 Ու ես գիտէի թէ ամէն ատեն կը լսես զիս. բայց
ըսի շուրջս կայնող բազմութեան համար, որպէսզի հաւատան թէ դո՛ւն ղրկեցիր զիս»: 43
Ասիկա ըսելէն ետք՝ բարձրաձայն պոռաց. «Ղազարո՛ս, դո՛ւրս եկուր»: 44 Մեռելն ալ ելաւ՝
ոտքերն ու ձեռքերը պատանքով կապուած, եւ դէմքը՝ վարշամակով պատուած: Յիսուս
ըսաւ անոնց. «Արձակեցէ՛ք զինք, ու թո՛յլ տուէք որ երթայ»:*

## ԴԱՒ ՅԻՍՈՒՍԻ ԴԷՄ
## (Մատթ. 26. 1-5: Մարկ. 14. 1-2: Ղուկ. 22. 1-2)

*45 Հրեաներէն շատեր՝ որ եկած էին Մարիամի քով, երբ տեսան Յիսուսի ըրածը՝*

---

[ա] *Ոմանք՝ քարը՝ ուր դրուած էր մեռելը*

*հաւատացին իրեն: 46 Բայց անոնցմէ ոմանք գացին Փարիսեցիներուն ու պատմեցին
անոնց Յիսուսի ըրածը:*

*47 Ուստի քահանայապետներն ու Փարիսեցիները [բ]ժողով գումարեցին" եւ ըսին. «Ի՞նչ
ընենք, քանի որ այս մարդը բազմաթիւ նշաններ կ՚ընէ: 48 Եթէ թոյլ տանք անոր՝ որ
այսպէս շարունակէ, բոլորն ալ պիտի հաւատան անոր, ու Հռոմայեցիները պիտի գան եւ
կործանեն մեր տեղն ու ազգը»: 49 Անոնցմէ մէկը՝ Կայիափա անունով, որ այդ տարուան
քահանայապետն էր, ըսաւ անոնց. 50 «Դուք ոչինչ գիտէք, ու չէք ալ մտածեր թէ աւելի
օգտակար է մեզի՝ որ մէ՛կ մարդ մեռնի ժողովուրդին համար, եւ ամբողջ ազգը
չկորսուի»: 51 Բայց այս բանը ո՛չ թէ ինքնիրմէ ըսաւ, հապա այդ տարուան
քահանայապետը ըլլալով՝ մարգարէացաւ թէ Յիսուս պիտի մեռնէր ազգին համար. 52 եւ
ո՛չ միայն ազգին համար, այլ նաեւ հաւաքելով միացնելու համար Աստուծոյ ցրուած
որդիները:*

*53 Ուրեմն այդ օրէն ետք խորհրդակցեցան՝ որ սպաննեն զայն: 54 Ուստի ա՛լ Յիսուս
բացորոշապէս չէր շրջեր Հրեաներուն մէջ, հապա անկէ գնաց անապատին մօտ
երկրամաս մը, քաղաք մը՝ որ Եփրայիմ կը կոչուէր, եւ հոն կեցաւ իր աշակերտներուն
հետ:*

*55 Երբ Հրեաներուն Զատիկը մօտեցաւ, այդ երկրամասէն շատեր Երուսաղէմ
բարձրացան Զատիկէն առաջ՝ որպէսզի մաքրագործեն իրենք զիրենք: 56 Ուստի կը
փնտռէին Յիսուսը, ու տաճարին մէջ կեցած ատեն՝ կ՚ըսէին իրարու. «Ի՞նչ է ձեր
կարծիքը. արդեօք բնա՛ւ պիտի չգա՞յ այս տօնին»: 57 Իսկ քահանայապետներն ու
Փարիսեցիները պատուիրեր էին, որ եթէ մէկը գիտնայ անոր ո՛ւր ըլլալը՝ ցոյց տայ,
որպէսզի ձերբակալեն զայն:*

### ՅԻՍՈՒՍ Կ՚ՕԾՈՒԻ ԲԵԹԱՆԻԱՅԻ ՄԷՋ
*(Մատթ. 26. 6-13: Մարկ. 14. 3-9)*

## 12

*Իսկ Յիսուս Զատիկէն վեց օր առաջ եկաւ Բեթանիա, ուր կը գտնուէր մեռած
Ղազարոսը՝ որ ինք մեռելներէն յարուցանեց: 2 Հոն՝ ընթրիք մը սարքեցին անոր. Մարթա
կը սպասարկէր, ու Ղազարոս անոր հետ [ա]սեղան նստողներէն" մէկն էր: 3 Իսկ Մարիամ՝
առնելով մէկ լիտր թանկագին նարդոսի օծանելիք՝ օծեց Յիսուսի ոտքերը, եւ սրբեց անոր
ոտքերը իր մազերով. ու տունը լեցուեցաւ օծանելիքին հոտով: 4 Ուստի աշակերտներէն
մէկը՝ Իսկարիովտացի Սիմոնեան Յուդա, որ պիտի մատնէր զինք, ըսաւ. 5 «Ինչո՞ւ այդ
օծանելիքը չծախուեցաւ երեք հարիւր դահեկանի՝ որ տրուէր աղքատներուն»: 6 Ասիկա
ըսաւ՝ ո՛չ թէ աղքատները հոգալուն համար, հապա՝ քանի որ գող էր եւ ինք ունէր
գանձանակը, ու կը կրէր ինչ որ ձգուէր: 7 Իսկ Յիսուս ըսաւ. «Թո՛յլ տուր անոր. այդ բանը
պահեց իմ թաղումիս օրուան համար: 8 Որովհետեւ աղքատները ամէն ատեն ունիք ձեզի
հետ, բայց զիս ամէն ատեն չունիք»:*

### ԴԱՒ ՂԱԶԱՐՈՍԻ ԴԷՄ

*9 Ուստի Հրեաներէն մեծ բազմութիւն մը գիտցաւ անոր հոն ըլլալը, ու եկաւ՝ ո՛չ միայն
Յիսուսի համար, այլ նաեւ տեսնելու Ղազարոսը՝ որ մեռելներէն յարուցանած էր: 10 Իսկ*

---

[բ] Կամ՝ ատեանի անդամները հաւաքեցին

[ա] Յուն.՝ ընկողմանողներէն

*քահանայապետները խորհրդակցեցան՝ որ սպաննեն Ղազարոսն ալ. 11 որովհետեւ
Հրեաներէն շատեր անոր պատճառով կ'երթային ու կը հաւատային Յիսուսի:*

## ՅԻՍՈՒՍԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՄՈՒՏՔԸ ԵՐՈՒՍԱՂԷՄ
### (Մատթ. 21. 1-11: Մարկ. 11. 1-11: Ղուկ. 19. 28-40)

*12 Հետեւեալ օրը՝ մեծ բազմութիւն մը, որ եկած էր տօնին, երբ լսեց թէ Յիսուս կու գայ
Երուսաղէմ, 13 առաւ արմաւենիի ոստեր, դուրս ելաւ զայն դիմաւորելու, եւ կ'աղաղակէր.
«Ովսաննա՜, օրհնեա՜լ է Իսրայէլի թագաւորը՝ որ կու գայ Տէրոջ անունով»: 14 Յիսուս՝
գտնելով աւանակ մը՝ նստաւ անոր վրայ, ինչպէս գրուած է. 15 «Մի՛ վախնար, Սիոնի՛
աղջիկ. ահա՛ Թագաւորդ կու գայ՝ նստած իշու աւանակի վրայ»: 16 Անոր աշակերտները
նախապէս չհասկցան այդ բաները. բայց երբ Յիսուս փառաւորուեցաւ, այն ատեն յիշեցին
թէ ատոնք գրուած էին անոր մասին, եւ թէ իրենք ըրին անոր այդ բաները: 17 Իրեն հետ
եղող բազմութիւնը կը վկայէր թէ գերեզմանէն դուրս կանչեց Ղազարոսը ու մեռելներէն
յարուցանեց զայն: 18 Այս պատճառով ալ բազմութիւնը դիմաւորեց զինք, որովհետեւ
լսեցին թէ ի՛նք ըրած էր այս նշանը: 19 Իսկ Փարիսեցիները կ'ըսէին իրարու. «Կը
նշմարէ՞ք թէ անօգուտ է. ահա՛ ամբողջ աշխարհը [բ]կը հետեւի անոր"»:*

## ՔԱՆԻ ՄԸ ՅՈՅՆԵՐ ԿԸ ՓՆՏՌԵՆ ՅԻՍՈՒՍԸ

*20 Հոն՝ տօնին երկրպագելու բարձրացողներուն մէջ՝ քանի մը Յոյներ կային: 21 Ասոնք
մօտեցան Փիլիպպոսի, որ Գալիլեայի Բեթսայիդայէն էր, ու կը թախանձէին անոր՝ ըսելով.
«Տէ՛ր, կ'ուզենք Յիսո՛ւսը տեսնել»: 22 Փիլիպպոս եկաւ եւ ըսաւ Անդրէասի, ապա դարձեալ
Անդրէաս ու Փիլիպպոս միասին ըսին Յիսուսի: 23 Յիսուս ալ պատասխանեց անոնց.
«Ժամը հասաւ՝ որ մարդու Որդին փառաւորուի: 24 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը
յայտարարեմ ձեզի. "Եթէ ցորենին հատիկը հողին մէջ իյնալով չմեռնի՝ ինք մինակ կը
մնայ. բայց եթէ մեռնի՝ շատ պտուղ կը բերէ": 25 Ա՛ն որ կը սիրէ իր անձը՝ պիտի
կորսնցնէ զայն, եւ ա՛ն որ կ'ատէ իր անձը այս աշխարհի մէջ՝ յաւիտենական կեանքին
համար պիտի պահէ զայն: 26 Եթէ մէկը կը սպասարկէ ինծի՝ թող հետեւի ինծի. ու ես ո՛ւր
որ եմ, իմ սպասարկուս ալ հո՛ն պիտի ըլլայ. եթէ մէկը կը սպասարկէ ինծի, Հայրը պիտի
պատուէ զինք»:*

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԽՕՍԻ ԻՐ ՄԱՀՈՒԱՆ ՄԱՍԻՆ

*27 «Հիմա իմ անձս վրդոված է, եւ ի՞նչ ըսեմ. "Հա՛յր, ազատէ՛ զիս այս ժամէ՞ն": Բայց
ես եկած եմ ասո՛ր համար՝ ա՛յս ժամուն: 28 "Հա՛յր, փառաւորէ՛ քու անունդ"»: Ուստի
ձայն մը եկաւ երկինքէն. «Փառաւորեցի ալ, ու դարձեալ պիտի փառաւորեմ»: 29
Բազմութիւնը՝ որ կայնած էր ու կը լսէր, կ'ըսէր. «Որոտում կ'ըլլայ»: Ոմանք ալ կ'ըսէին.
«Հրեշտա՛կ մը խօսեցաւ իրեն հետ»: 30 Յիսուս պատասխանեց. «Այս ձայնը եկաւ ո՛չ թէ
ինծի համար, հապա՝ ձեզի համար: 31 Հիմա է այս աշխարհի դատաստանը, հիմա պիտի
վտարուի այս աշխարհի իշխանը: 32 Ես ալ, երբ բարձրանամ երկրէն, բոլորդ ալ պիտի
քաշեմ ինծի»: 33 Այս բանը կ'ըսէր՝ մատնանշելով թէ ի՛նչ տեսակ մահով պիտի մեռնէր:
34 Բազմութիւնը պատասխանեց անոր. «Մենք լսեցինք Օրէնքէն թէ Քրիստոս յաւիտեա՛ն*

---

*[բ] Յուն.՝ գնաց անոր ետեւէն*

*կը մնայ: Դուն ի՞նչպէս կ՚ըսես. “Մարդու Որդին պէտք է բարձրանայ□: Ո՞վ է այդ մարդու
Որդին»: 35 Ուստի Յիսուս ըսաւ անոնց. «Քի՛չ մը ատեն ալ լոյսը ձեզի հետ է. քալեցէ՛ք՝
մինչ տակաւին լոյսը ունիք, որպէսզի խաւարը չհասնի ձեր վրայ. որովհետեւ խաւարի մէջ
քալողը չի գիտեր թէ ո՛ւր կ՚երթայ: 36 Մինչ լոյսը ունիք՝ հաւատացէ՛ք այդ լոյսին,
որպէսզի լոյսի որդիներ ըլլաք»: Յիսուս այս բաները խօսեցաւ, ապա գնաց՝ ինքզինք
ծածկելով անոնց աչքերէն:*

## *ՀՐԵԱՆԵՐՈՒՆ ԱՆՀԱՒԱՏՈՒԹԻՒՆԸ*

*37 Թէպէտ այնքան նշաններ ըրած էր անոնց առջեւ, անոնք չէին հաւատար իրեն. 38
որպէսզի իրագործուի Եսայի մարգարէին խօսքը՝ որ ըսած էր. «Տէ՛ր, ո՞վ հաւատաց մեր
տուած լուրին, ու Տէրոջ բազուկը որո՞ւն յայտնուեցաւ»: 39 Չէին կրնար հաւատալ՝ քանի
որ Եսայի դարձեալ ըսած է. 40 «Կուրցուց անոնց աչքերը եւ կարծրացուց անոնց սիրտը,
որպէսզի չտեսնեն իրենց աչքերով, չհասկնան իրենց սիրտով ու դարձի չգան, եւ ես
չբժշկեմ զանոնք»: 41 Եսայի ըսաւ ասիկա՝ երբ տեսաւ անոր փառքը ու խօսեցաւ անոր
մասին: 42 Սակայն միաժամանակ՝ պետերէն ալ շատեր հաւատացին իրեն. բայց չէին
դաւաներ զայն՝ Փարիսեցիներուն պատճառով, որպէսզի չվռնտուին ժողովարանէն. 43
որովհետեւ աւելի սիրեցին մարդոց փառքը՝ քան Աստուծոյ փառքը:*

## *ԴԱՏՈՒՄ ՅԻՍՈՒՍԻ ԽՕՍՔՈՎ*

*44 Յիսուս կ՚աղաղակէր. «Ա՛ն որ կը հաւատայ ինծի, կը հաւատայ ո՛չ թէ ինծի, հապա՝
զիս ղրկողի՛ն. 45 եւ ա՛ն որ կը տեսնէ զիս, կը տեսնէ զիս ղրկո՛ղը: 46 Ես աշխարհ եկայ
իբր լոյս, որպէսզի ո՛վ որ հաւատայ ինծի՝ չմնայ խաւարի մէջ: 47 Եթէ մէկը լսէ իմ
խօսքերս ու չհաւատայ՝ ես չեմ դատեր զինք, քանի որ ես եկայ՝ ո՛չ թէ դատելու աշխարհը,
հապա՝ փրկելու աշխարհը: 48 Ա՛ն որ կ՚անարգէ զիս եւ չ՚ընդունիր իմ խօսքերս, ունի մէկը՝
որ կը դատէ զինք. այն խօսքը՝ որ ես ըսի, անիկա՛ պիտի դատէ զինք՝ վերջին օրը: 49
Որովհետեւ ես ինձմէ չխօսեցայ, հապա Հայրը՝ որ ղրկեց զիս, ի՛նք պատուիրեց ինծի թէ
ի՛նչ պիտի ըսեմ եւ ի՛նչ պիտի խօսիմ: 50 Եւ գիտեմ թէ անոր պատուիրածը՝
յաւիտենական կեանքն է. ուրեմն ինչ որ կը խօսիմ, ա՛յնպէս կը խօսիմ՝ ինչպէս Հայրը
ըսաւ ինծի»:*

## *ՅԻՍՈՒՍ ԿԸ ԼՈՒԱՅ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՈՏՔԵՐԸ*

# *13*

*Զատիկի տօնէն առաջ՝ Յիսուս, գիտնալով թէ իր ժամը հասած է՝ որ մեկնի այս
աշխարհէն Հօրը քով, սիրած ըլլալով իրեններդ՝ որոնք աշխարհի մէջ էին, սիրեց զանոնք
մինչեւ վախճանը:*

*2 Երբ ընթրիքը կ՚ըլլար, (Չարախօսը արդէն Իսկարիովտացի Սիմոնեան Յուդան
[ա]դրդած էր՝ որ մատնէ զայն,) 3 Յիսուս՝ գիտնալով թէ Հայրը ամէն բան տուաւ իր ձեռքը,
եւ թէ ինք եկաւ Աստուծմէ ու կ՚երթայ Աստուծոյ քով, 4 ոտքի ելաւ ընթրիքէն, մէկդի դրաւ
հանդերձները, եւ առնելով ղենջակ մը՝ կապեց մէջքին: 5 Յետոյ ջուր լեցուց կոնքին մէջ,
եւ սկսաւ լուալ աշակերտներուն ոտքերը ու սրբել մէջքին կապած ղենջակով: 6 Ուստի
եկաւ Սիմոն Պետրոսի. ան ալ ըսաւ իրեն. «Տէ՛ր, դո՞ւն պիտի լուաս իմ ոտքերս»: 7 Յիսուս
պատասխանեց անոր. «Ինչ որ ես կ՚ընեմ՝ դուն հիմա չես ըմբռներ, բայց յետոյ պիտի*

---

*[ա] Յուն.՝ սիրտին մէջ դրած*

*ըմբռնես»: 8 Պետրոս ըսաւ անոր. «Դուն բնա՛ւ պիտի չլուաս իմ ոտքերս»: Յիսուս
պատասխանեց անոր. «Եթէ չլուամ քեզ, դուն բաժին չունիս ինծի հետ»: 9 Սիմոն Պետրոս
ըսաւ անոր. «Տէ՛ր, ո՛չ միայն ոտքերս, այլ նաեւ՝ ձեռքերս ու գլուխս»: 10 Յիսուս ըսաւ
անոր. «Ա՛ն որ լոգցած է՝ միայն ոտքերը լուալու պէտք ունի, որ ամբողջովին մաքուր
ըլլայ. եւ դուք մաքուր էք, բայց ոչ բոլորդ»: 11 Արդարեւ գիտէր թէ ո՛վ պիտի մատնէր
զինք: Ուստի ըսաւ. «Բոլորդ մաքուր չէք»: 12 Երբ լուաց անոնց ոտքերը, եւ առնելով իր
հանդերձները՝ դարձեալ սեղան նստաւ, ըսաւ անոնց. «Գիտէ՞ք ի՛նչ ըրի ձեզի: 13 Դուք
Վարդապետ ու Տէր կը կոչէք զիս, եւ ճիշդ կ՚ըսէք, որովհետեւ այնպէս եմ: 14 Ուստի եթէ
ես՝ Տէրս ու Վարդապետս՝ լուացի ձեր ոտքերը, դո՛ւք ալ պարտաւոր էք լուալ իրարու
ոտքերը: 15 Որովհետեւ օրինակ մը տուի ձեզի, որպէսզի ինչպէս ես ըրի ձեզի՝ դուք ալ
ընէք: 16 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “[բ]Ծառան իր տիրոջմէն
մեծ չէ, ո՛չ ալ ղրկուածը՝ զինք ղրկողէն մեծ է□: 17 Եթէ գիտէք այս բաները, երանելի՜ էք՝
եթէ ընէք զանոնք: 18 Ես կը խօսիմ՝ ո՛չ թէ ձեր բոլորին համար, որովհետեւ ես կը
ճանչնամ իմ ընտրածներս. հապա՝ որպէսզի իրագործուի այն գրուածը. “Ան որ հաց
կ՚ուտէր ինծի հետ՝ կրունկ վերցուց ինծի դէմ□: 19 Այժմէ՛ն կ՚ըսեմ ձեզի՝ ըլլալէ՛ն առաջ,
որպէսզի երբ ըլլայ՝ հաւատաք թէ ես ան եմ: 20 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը
յայտարարեմ ձեզի. “Ո՛վ որ ընդունի ա՛ն՝ որ ես կը ղրկեմ, կ՚ընդունի զի՛ս, եւ ո՛վ որ
կ՚ընդունի զիս՝ կ՚ընդունի զիս ղրկո՛ղը□»:*

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԳՈՒՇԱԿԷ ԻՐ ՄԱՏՆՈՒԹԻՒՆԸ
### (Մատթ. 26. 20-25: Մարկ. 14. 17-21: Ղուկ. 22. 21-23)

*21 Երբ Յիսուս ըսաւ ասիկա՝ վրդովեցաւ իր հոգիին մէջ, եւ վկայեց՝ ըսելով.
«Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի թէ ձեզմէ մէկը պիտի մատնէ
զիս»: 22 Ուստի աշակերտները իրարու կը նայէին, վարանած՝ թէ որո՛ւ մասին կը խօսէր:
23 Աշակերտներէն մէկը կար՝ Յիսուսի [գ]քով նստած, որ Յիսուս կը սիրէր: 24 Ուրեմն
Սիմոն Պետրոս նշան կ՚ընէր անոր, հարցափորձելու թէ ո՛վ պիտի ըլլայ ան՝ որուն մասին
կը խօսէր: 25 Ան ալ՝ հյնալով Յիսուսի կուրծքին վրայ՝ ըսաւ անոր. «Տէ՛ր, ո՞վ է անիկա»:
26 Յիսուս պատասխանեց. «Ա՛ն է՝ որուն թաթխելով կու տամ այս պատառը»: Եւ
թաթխելով պատառը՝ տուաւ Իսկարիովտացի Սիմոնեան Յուդայի: 27 Պատառէն ետք՝
Սատանան մտաւ անոր ներսը. ուստի Յիսուս ըսաւ անոր. «Ինչ որ պիտի ընես՝ շուտո՛վ
ըրէ»: 28 Բայց սեղան նստողներէն ո՛չ մէկը հասկցաւ թէ ինչո՛ւ ըսաւ անոր ասիկա. 29
որովհետեւ ոմանք կը կարծէին թէ քանի որ Յուդա՛ ունէր գանձանակը՝ Յիսուս կ՚ըսէր
անոր. «Գնէ՛ ինչ որ պէտք է մեզի այս տօնին». կամ՝ որպէսզի բան մը տայ
աղքատներուն: 30 Ան ալ՝ ստանալով պատառը՝ իսկոյն դուրս ելաւ. սակայն գիշեր էր:*

## ՆՈՐ ՊԱՏՈՒԻՐԱՆԸ

*31 Երբ ան դուրս ելաւ՝ Յիսուս ըսաւ. «Հի՛մա մարդու Որդին փառաւորուեցաւ, եւ
Աստուած փառաւորուեցաւ անով: 32 Եթէ Աստուած փառաւորուեցաւ անով, Աստուած ալ
իրմով պիտի փառաւորէ զայն, ու շուտո՛վ պիտի փառաւորէ զայն: 33 Որդեակնե՛ր, քիչ մը
ատեն ալ ձեզի հետ եմ. պիտի փնտռէք զիս, եւ ինչպէս Հրեաներուն ըսի. “Դուք չէք կրնար
գալ ուր որ ես կ՚երթամ□, հիմա ձեզի՛ ալ կ՚ըսեմ: 34 Նոր պատուիրան մը կու տամ ձեզի.*

---

[բ] Կամ՝ Ստրուկը

[գ] Յուն.՝ գոգը

“Սիրեցէ՛ք զիրար□. ինչպէս ես սիրեցի ձեզ, դո՛ւք ալ սիրեցէք զիրար: 35 Ասո՛վ բոլորը
պիտի գիտնան թէ իմ աշակերտներս էք, եթէ սէր ունենաք իրարու հանդէպ»:

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԳՈՒՇԱԿԷ ՊԵՏՐՈՍԻ ՈՒՐԱՑՈՒՄԸ
(Մատթ. 26. 31-35: Մարկ. 14. 27-31: Ղուկ. 22. 31-34)

36 Սիմոն Պետրոս ըսաւ անոր. «Տէ՛ր, ո՞ւր կ՚երթաս»: Յիսուս պատասխանեց անոր.
«Ուր որ ես կ՚երթամ՝ դուն հիմա չես կրնար հետեւիլ ինծի. բայց յետոյ պիտի հետեւիս
ինծի»: 37 Պետրոս ըսաւ անոր. «Տէ՛ր, ինչո՞ւ հիմա չեմ կրնար հետեւիլ քեզի. ես իմ ա՛նձս
ալ պիտի ընծայեմ քեզի համար»: 38 Յիսուս պատասխանեց անոր. «Քու ա՞նձդ պիտի
ընծայես ինծի համար: Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ քեզի. “Աքաղաղը
պիտի չկանչէ՝ մինչեւ որ դուն երե՛ք անգամ ուրանաս զիս□»:

## ՅԻՍՈՒՍ՝ ՃԱՄԲԱՆ ԴԷՊԻ ՀԱՅՐԸ

# 14

«Ձեր սիրտը թող չվրդովի. հաւատացէ՛ք Աստուծոյ, հաւատացէ՛ք նաեւ ինծի: 2 Շատ
բնակարաններ կան իմ Հօրս տան մէջ. եթէ այդպէս չըլլար, միթէ պիտի ըսէի՞ ձեզի թէ
կ՚երթամ՝ որ տեղ պատրաստեմ ձեզի: 3 Երբ երթամ եւ տեղ պատրաստեմ ձեզի, դարձեալ
պիտի գամ ու քովս ընդունիմ ձեզ, որպէսզի ո՛ւր ես եմ՝ դո՛ւք ալ հոն ըլլաք: 4 Գիտէք ո՛ւր
կ՚երթամ, գիտէք նաեւ ճամբան»:

5 Թովմաս ըսաւ անոր. «Տէ՛ր, չենք գիտեր ո՛ւր կ՚երթաս, եւ ի՞նչպէս կրնանք գիտնալ
ճամբան»: 6 Յիսուս ըսաւ անոր. «Ե՛ս եմ ճամբան, ճշմարտութիւնն ու կեանքը. ո՛չ մէկը
կու գայ Հօրը քով՝ բայց միայն ինձմով: 7 Եթէ ճանչնայիք զիս՝ պիտի ճանչնայիք նաեւ իմ
Հայրս. եւ այժմէն իսկ կը ճանչնաք զայն, ու տեսած էք զայն»:

8 Փիլիպպոս ըսաւ անոր. «Տէ՛ր, ցո՛յց տուր մեզի Հայրը, ու կը բաւէ մեզի»: 9 Յիսուս
ըսաւ անոր. «Ա՛յսքան ժամանակ ես ձեզի հետ եմ, եւ չճանչցա՞ր զիս, Փիլիպպո՛ս: Ա՛ն որ
տեսաւ զիս՝ տեսաւ Հա՛յրը. դուն ի՞նչպէս կ՚ըսես. “Ցո՛յց տուր մեզի Հայրը□: 10 Չե՞ս
հաւատար թէ ես Հօրը մէջն եմ, ու Հայրը իմ մէջս է: Այն խօսքերը՝ որ կ՚ըսեմ ձեզի, ես
ինձմէ չեմ ըսեր. հապա Հայրը՝ որ բնակած է իմ մէջս, անիկա՛ կ՚ընէ այդ գործերը: 11
Հաւատացէ՛ք ինծի, թէ ես Հօրը մէջն եմ, ու Հայրը իմ մէջս է: 12 Այլապէս՝ գոնէ
գործերո՛ւն համար հաւատացէք ինծի: Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ
ձեզի. “Ա՛ն որ կը հաւատայ ինծի, ի՛նք ալ պիտի ընէ այն գործերը՝ որ ես կ՚ընեմ, եւ
անոնցմէ աւելի՛ մեծ գործեր պիտի ընէ, որովհետեւ ես կ՚երթամ Հօրս քով□: 13 Ի՛նչ որ
խնդրէք իմ անունովս՝ պիտի ընեմ զայն, որպէսզի Հայրը փառաւորուի Որդիով: 14 Եթէ
որեւէ բան խնդրէք իմ անունովս, պիտի ընեմ»:

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԽՈՍՏԱՆԱՅ ՂՐԿԵԼ ՍՈՒՐԲ ՀՈԳԻՆ

15 «Եթէ կը սիրէք զիս՝ պահեցէ՛ք իմ պատուիրաններս: 16 Ես ալ պիտի թախանձեմ
Հօրը, եւ ուրիշ Մխիթարիչ մը պիտի տայ ձեզի, որպէսզի յաւիտեան բնակի ձեզի հետ.- 17
Ճշմարտութեան Հոգին, որ այս աշխարհը չի կրնար ընդունիլ, որովհետեւ չի տեսներ զայն
ու չի ճանչնար զայն. բայց դուք կը ճանչնաք զայն, որովհետեւ կը բնակի ձեր քով եւ
պիտի ըլլայ ձեր մէջ: 18 Ձեզ որբ պիտի չթողում. պիտի գամ ձեզի: 19 Քիչ մը ատենէն
ետք աշխարհը ա՛լ պիտի չտեսնէ զիս. բայց դուք պիտի տեսնէք զիս, որովհետեւ ես
կ՚ապրի՛մ, եւ դո՛ւք ալ պիտի ապրիք: 20 Այն օրը պիտի գիտնաք թէ ես իմ Հօրս մէջ եմ, ու
դուք՝ իմ մէջս, ես ալ՝ ձեր մէջ: 21 Ա՛ն որ ունի իմ պատուիրաններս եւ կը պահէ զանոնք,

անիկա՛ է զիս սիրողը: Ա՛ն որ կը սիրէ զիս՝ պիտի սիրուի իմ Հօրմէ՛ս. ու ես պիտի սիրեմ
զայն, եւ զիս պիտի յայտնեմ անոր»:
22 Յուդա (ոչ Իսկարիովտացին) ըսաւ անոր. «Տէ՛ր, ի՞նչպէս կ՚ըլլայ՝ որ դուն քեզ
պիտի յայտնես մեզի, բայց ոչ՝ աշխարհին»: 23 Յիսուս պատասխանեց անոր. «Եթէ մէկը
սիրէ զիս՝ պիտի պահէ իմ խօսքս, ու իմ Հայրս պիտի սիրէ զայն. եւ պիտի գանք անոր ու
բնակինք անոր հետ: 24 Ա՛ն որ չի սիրեր զիս՝ չի պահեր իմ խօսքերս: Այն խօսքը որ կը
լսէք՝ իմս չէ, հապա Հօրս՝ որ ղրկեց զիս: 25 Այս բաները խօսեցայ ձեզի, քանի դեռ կը
մնամ ձեր քով: 26 Բայց Մխիթարիչը՝ Սուրբ Հոգին, որ Հայրը պիտի ղրկէ իմ անունովս,
անիկա՛ պիտի սորվեցնէ ձեզի ամէնը, եւ ինչ որ ըսի ձեզի՝ պիտի յիշեցնէ ձեզի: 27
Խաղաղութիւն կը թողում ձեզի, ի՛մ խաղաղութիւնս կու տամ ձեզի. ես չեմ տար ձեզի
ա՛յնպէս՝ ինչպէս աշխարհը կու տայ: Ձեր սիրտը թող չվրդովի ու չերկնչի: 28 Լսեցիք թէ
ըսի ձեզի. "Ես կ՚երթամ, բայց դարձեալ պիտի գամ ձեզի□: Եթէ սիրէիք զիս, պիտի
ուրախանայիք՝ [ա]որ ես կ՚երթամ Հօրը քով, որովհետեւ իմ Հայրս ինձմէ մեծ է: 29 Եւ
այժմէն՝ դեռ չեղած՝ ըսի ձեզի, որպէսզի երբ ըլլայ՝ հաւատաք: 30 Ա՛լ շատ պիտի չխօսիմ
ձեզի հետ, որովհետեւ այս աշխարհի իշխանը կու գայ. բայց ո՛չ մէկ հեղինակութիւն ունի
իմ վրաս: 31 Սակայն աշխարհը թող գիտնայ թէ ես կը սիրեմ Հայրը, եւ կ՚ընեմ ա՛յնպէս՝
ինչպէս Հայրը պատուիրեց ինծի: Ոտքի՛ ելէք, երթա՛նք ասկէ»:

### ՅԻՍՈՒՍ՝ ՃՇՄԱՐԻՏ ՈՐԹԱՏՈՒՆԿԸ

## 15

«Ե՛ս եմ ճշմարիտ որթատունկը, եւ իմ Հայրս՝ մշակն է: 2 Ամէն ճիւղ՝ որ իմ վրաս է ու
պտուղ չի բերեր, կը վերցնէ զայն. իսկ ամէն ճիւղ որ պտուղ կը բերէ՝ կը մաքրէ զայն,
որպէսզի ա՛լ աւելի պտուղ բերէ: 3 Դուք արդէն մաքուր էք այն խօսքով՝ որ ըսի ձեզի: 4
Ի՛մ մէջս մնացէք, ու ես՝ ձեր մէջ. ինչպէս ճիւղը չի կրնար ինքնիրմէ պտուղ բերել՝ եթէ
որթատունկին վրայ չմնայ, նոյնպէս ալ դուք չէք կրնար՝ եթէ իմ մէջս չմնաք: 5 Ես
որթատունկն եմ, եւ դուք ճիւղերն էք. ա՛ն որ իմ մէջս կը մնայ, ու ես՝ անոր մէջ, անիկա՛
շատ պտուղ պիտի բերէ, որովհետեւ առանց ինծի ոչինչ կրնաք ընել: 6 Եթէ մէկը իմ մէջս
չմնայ, ան դուրս կը նետուի՝ ճիւղի մը պէս, եւ կը չորնայ. զանոնք կը ժողվեն ու կրակը կը
նետեն, եւ անոնք կ՚այրին: 7 Եթէ դուք մնաք իմ մէջս, ու իմ խօսքերս ալ մնան ձեր մէջ,
ի՛նչ որ ուզէք՝ պիտի խնդրէք, եւ պիտի ըլլայ ձեզի: 8 Իմ Հայրս կը փառաւորուի՝ երբ դուք
շատ պտուղ բերէք. այսպէս՝ իմ աշակերտներս կ՚ըլլաք:
9 Ինչպէս Հայրը սիրեց զիս, ե՛ս ալ սիրեցի ձեզ. մնացէ՛ք իմ սիրոյս մէջ: 10 Եթէ
պահէք իմ պատուիրաններս՝ պիտի մնաք իմ սիրոյս մէջ, ինչպէս ես պահեցի իմ Հօրս
պատուիրանները եւ կը մնամ անոր սիրոյն մէջ: 11 Այս բաները խօսեցայ ձեզի՝ որպէսզի
իմ ուրախութիւնս մնայ ձեր մէջ, ու ձեր ուրախութիւնը լման ըլլայ: 12 Սա՛ է իմ
պատուիրանս՝ որ սիրէք զիրար, ինչպէս ե՛ս սիրեցի ձեզ: 13 Ո՛չ մէկը ունի աւելի մեծ սէր,
քան այն՝ երբ մէկը կ՚ընծայէ իր անձը իր բարեկամներուն համար: 14 Դուք իմ
բարեկամներս էք, եթէ ընէք ի՛նչ որ ես կը պատուիրեմ ձեզի: 15 Այլեւս [ա]ծառայ չեմ կոչեր
ձեզ, որովհետեւ ծառան չի գիտեր թէ իր տէրը ի՛նչ կ՚ընէ. հապա ես բարեկա՛մ կոչեցի
ձեզ, որովհետեւ ամէն ինչ որ լսեցի իմ Հօրմէս՝ գիտցուցի ձեզի: 16 Ո՛չ թէ դո՛ւք ընտրեցիք
զիս, հապա ե՛ս ընտրեցի ձեզ, ու նշանակեցի ձեզ՝ որպէսզի երթաք եւ պտուղ բերէք, ու ձեր
պտուղը մնայ. որպէսզի ի՛նչ որ խնդրէք Հօրմէն՝ իմ անունովս, տայ ձեզի: 17 Ասիկա՛ կը

---

[ա] Ոմանք՝ որ ըսի թէ

[ա] Կամ՝ ստրուկ

*պատուիրեմ ձեզի, որ սիրէք զիրար»:*

### ԱՇԽԱՐՀԻ ԱՏԵԼՈՒԹԻՒՆԸ

*18 «Եթէ աշխարհը կ’ատէ ձեզ, գիտցէք թէ ատեց զիս ձեզմէ առաջ: 19 Եթէ աշխարհէն*
*եղած ըլլայիք՝ աշխարհը կը սիրէր իրենները. բայց քանի որ աշխարհէն չէք, հապա ես*
*ձեզ ընտրեցի աշխարհէն, աշխարհը կ’ատէ ձեզ: 20 Յիշեցէ՛ք այն խօսքը՝ որ ըսի ձեզի.*
*“[բ]Ծառան իր տիրոջմէն մեծ չէ□. եթէ հալածեցին զիս, պիտի հալածեն նաեւ ձեզ. եթէ*
*պահեցին իմ խօսքս, պիտի պահեն նաեւ ձերը: 21 Բայց այս բոլոր բաները պիտի ընեն*
*ձեզի՝ իմ անունիս համար, որովհետեւ չճանչցան ա՛ն՝ որ ղրկեց զիս: 22 Եթէ ես եկած եւ*
*խօսած չըլլայի անոնց՝ մեղք չէին ունենար. բայց հիմա պատրուակ մը չունին իրենց*
*մեղքին: 23 Ա՛ն որ կ’ատէ զիս՝ կ’ատէ նաեւ իմ Հայրս: 24 Եթէ իրենց մէջ ըրած չըլլայի*
*այն գործերը, որ ուրիշ ո՛չ մէկը ըրած է, անոնք մեղք չէին ունենար. բայց հիմա տեսան եւ*
*ատեցին զի՛ս ալ, իմ Հա՛յրս ալ: 25 Սակայն ատիկա եղաւ, որպէսզի իրագործուի այն*
*խօսքը՝ որ գրուած է իրենց Օրէնքին մէջ. “Ջուր տեղը ատեցին զիս□: 26 Բայց երբ*
*Մխիթարիչը գայ՝ որ ես Հօրմէն պիտի ղրկեմ ձեզի, Ճշմարտութեան Հոգին՝ որ կը բխի*
*Հօրմէն, անիկա՛ պիտի վկայէ իմ մասիս: 27 Եւ դո՛ւք ալ կը վկայէք, որովհետեւ սկիզբէն ի*
*վեր ինծի հետ էք»:*

## 16

*«Այս բաները խօսեցայ ձեզի՝ որպէսզի չգայթակղիք: 2 Իրենց ժողովարաններէն պիտի*
*վռնտեն ձեզ. նոյնիսկ ժամը պիտի գայ, երբ ո՛վ որ սպաննէ ձեզ՝ այնպէս պիտի կարծէ թէ*
*պաշտամունք կը կատարէ Աստուծոյ: 3 Եւ այս բաները պիտի ընեն ձեզի, որովհետեւ ո՛չ*
*Հայրը ճանչցան, ո՛չ ալ՝ զիս: 4 Բայց այս բաները խօսեցայ ձեզի, որպէսզի երբ ժամը գայ՝*
*յիշէք թէ ես ըսի ձեզի: Ասոնք սկիզբէն չըսի ձեզի, որովհետեւ ձեզի հետ էի»:*

### ՍՈՒՐԲ ՀՈԳԻԻՆ ԳՈՐԾԸ

*5 «Սակայն հի՛մա կ’երթամ զիս ղրկողին քով, եւ ձեզմէ ո՛չ մէկը կը հարցնէ ինծի.*
*“Ո՞ւր կ’երթաս□: 6 Բայց քանի որ այս բաները խօսեցայ ձեզի, ձեր սիրտը տրտմութեամբ*
*լեցուեցաւ: 7 Սակայն ես ճշմարտութիւնը կ’ըսեմ ձեզի. “Աւելի օգտակար է ձեզի՝ եթէ ես*
*երթամ□: Որովհետեւ եթէ չերթամ՝ Մխիթարիչը չի գար ձեզի. իսկ եթէ մեկնիմ՝ զինք*
*պիտի ղրկեմ ձեզի: 8 Ու երբ ինք գայ՝ պիտի կշտամբէ աշխարհը մեղքի համար,*
*արդարութեան համար ու դատաստանի համար: 9 Մեղքի համար՝ քանի որ չեն հաւատար*
*ինծի. 10 արդարութեան համար՝ որովհետեւ ես կ’երթամ իմ Հօրս քով, եւ ա՛լ պիտի*
*չտեսնէք զիս. 11 դատաստանի համար՝ քանի որ այս աշխարհի իշխանը դատուած է: 12*
*Տակաւին շատ բաներ ունիմ՝ ձեզի ըսելու, բայց հիմա չէք կրնար հանդուրժել: 13 Իսկ երբ*
*ինք՝ Ճշմարտութեան Հոգին գայ, ամբո՛ղջ ճշմարտութեան պիտի առաջնորդէ ձեզ.*
*որովհետեւ պիտի չխօսի ինքնիրմէ, հապա ինչ որ լսէ՝ զայն պիտի ըսէ, ու գալիքները*
*պիտի հաղորդէ ձեզի: 14 Ինք պիտի փառաւորէ զիս, որովհետեւ պիտի ստանայ իմինէս ու*
*հաղորդէ ձեզի: 15 Ամէն ինչ որ Հայրը ունի՝ ի՛մս է. ուստի ըսի ձեզի թէ պիտի առնէ*
*իմինէս ու հաղորդէ ձեզի»:*

### ՏԽՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՈՒՐԱԽՈՒԹԻՒՆ

---

[բ] *Կամ՝ Ստրուկը*

*16 «Քիչ մը ատենէն՝ ա՛լ պիտի չտեսնէք զիս. եւ քիչ մը ատենէն՝ դարձեալ պիտի
տեսնէք զիս, քանի որ ես կ՚երթամ Հօրը քով»:*
*17 Ուստի աշակերտներէն **ոմանք** կ՚ըսէին իրարու. «Ի՞նչ է ասիկա, որ կ՚ըսէ մեզի.
“Քիչ մը ատենէն՝ ա՛լ պիտի չտեսնէք զիս. եւ քիչ մը ատենէն՝ դարձեալ պիտի տեսնէք
զիս□: Նաեւ. “Քանի որ ես կ՚երթամ Հօրը քով□»: 18 Ուրեմն կ՚ըսէին. «Ի՞նչ է ասիկա՝ որ
կ՚ըսէ. “Քիչ մը ատենէն□. չենք գիտեր ի՛նչ կը խօսի»: 19 Ուստի Յիսուս, գիտնալով թէ
կ՚ուզեն հարցնել իրեն, ըսաւ անոնց. «Ջիրա՞ր կը հարցափորձէք, քանի որ ըսի. “Քիչ մը
ատենէն՝ ա՛լ պիտի չտեսնէք զիս. եւ քիչ մը ատենէն՝ դարձեալ պիտի տեսնէք զիս□: 20
Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Դուք պիտի լաք ու ողբաք, բայց
աշխարհը պիտի ուրախանայ. դուք պիտի տրտմիք, սակայն ձեր տրտմութիւնը պիտի
փոխուի ուրախութեան□: 21 Կին մը տրտմութիւն կ՚ունենայ ծննդաբերութեան ատեն,
որովհետեւ իր ժամը հասած է. բայց երբ ծնանի մանուկը՝ ա՛լ չի յիշեր տառապանքը,
ուրախանալով որ մարդ մը ծնաւ աշխարհի մէջ: 22 Ուրեմն դո՛ւք ալ տրտմութիւն ունիք
հիմա. բայց ես դարձեալ պիտի տեսնեմ ձեզ ու ձեր սիրտը պիտի ուրախանայ, եւ ո՛չ մէկը
ձեզմէ պիտի յափշտակէ ձեր ուրախութիւնը: 23 Այդ օրը՝ ոչինչ պիտի հարցնէք ինծի:
Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ ձեզի. “Ի՛նչ որ խնդրէք Հօրմէն՝ իմ
անունովս, պիտի տայ ձեզի: 24 Մինչեւ հիմա՝ ոչինչ խնդրեցիք իմ անունովս. խնդրեցէ՛ք՝
ու պիտի ստանաք, որպէսզի ձեր ուրախութիւնը լման ըլլայ□»:*

## ԱՇԽԱՐՀԻ ՎՐԱՅ ՅԱՂԹՈՒԹԻՒՆ

*25 «Այս բաները առակներով խօսեցայ ձեզի. **բայց** ժամը պիտի գայ, երբ ա՛լ
առակներով պիտի չխօսիմ ձեզի, հապա բացորոշապէս պիտի հաղորդեմ ձեզի Հօրը
մասին: 26 Այդ օրը՝ ի՛մ անունովս պիտի խնդրէք: Չեմ ըսեր ձեզի թէ պիտի թախանձեմ
Հօրը՝ ձեզի համար. 27 քանի որ ի՛նք՝ Հայրը կը սիրէ ձեզ, որովհետեւ դուք սիրեցիք զիս ու
հաւատացիք թէ ես Աստուծմէ ելայ: 28 Հօրմէն ելայ եւ աշխարհ եկայ. դարձեալ կը թողում
աշխարհը ու կ՚երթամ Հօրը քով»:*
*29 Իր աշակերտները ըսին իրեն. «Ահա՛ բացորոշապէս կը խօսիս հիմա, եւ առա՛կ մըն
ալ չես ըսեր: 30 Գիտենք հիմա՝ թէ դուն գիտես ամէն բան, եւ պէտք չունիս՝ որ մէկը
հարցնէ քեզի **որեւէ բան.** ասո՛վ կը հաւատանք թէ Աստուծմէ ելար»: 31 Յիսուս
պատասխանեց անոնց. «Կը հաւատա՞ք հիմա: 32 Ահա՛ ժամը պիտի գայ ու հասած ալ է,
երբ պիտի ցրուիք՝ իւրաքանչիւրը իր տեղը, եւ մինակ պիտի թողուք զիս. բայց ես մինակ
չեմ, որովհետեւ Հայրը ինծի հետ է: 33 Այս բաները խօսեցայ ձեզի, որպէսզի
խաղաղութիւն ունենաք ինձմով. աշխարհի մէջ տառապանք պիտի ունենաք, բայց
քաջալերուեցէ՛ք, ես յաղթեցի աշխարհին»:*

## ՅԻՍՈՒՍ Կ՚ԱՂՕԹԷ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

# 17

*Երբ Յիսուս խօսեցաւ ասոնք, բարձրացուց իր աչքերը դէպի երկինք եւ ըսաւ. «Հա՛յր,
ժամը հասած է. փառաւորէ՛ քու Որդիդ, որպէսզի քու Որդիդ ալ փառաւորէ քեզ, 2 քանի
իշխանութիւն տուիր իրեն ամէն մարմինի վրայ, որ տայ յաւիտենական կեանքը բոլոր
անոնց՝ որ տուիր իրեն: 3 Եւ սա՛ է յաւիտենական կեանքը.– ճանչնալ քեզ՝ միմիայն
ճշմարիտ Աստուածը, ու Յիսուս Քրիստոսը՝ որ դուն ղրկեցիր: 4 Ես փառաւորեցի քեզ
երկրի վրայ. աւարտեցի այն գործը՝ որ տուիր ինծի ընելու: 5 Եւ հիմա, Հա՛յր, փառաւորէ՛
զիս քու քովդ այն փառքով՝ որ ունէի քովդ աշխարհի ըլլալէն առաջ: 6 Բացայայտեցի քու*

*անունդ այն մարդոց՝ որ տուիր ինծի աշխարհէն: Քուկդ էին՝ եւ ինծի տուիր զանոնք, ու
պահեցին քու խօսքդ: 7 Հիմա գիտցան թէ ամէն ինչ որ տուիր ինծի՝ քեզմէ՛ է. 8
որովհետեւ այն խօսքերը որ տուիր ինծի՝ ես տուի անոնց, անոնք ալ ընդունեցին եւ
ճշմա՛րտապէս գիտցան թէ ես քեզմէ՛ ելայ, ու հաւատացին թէ դո՛ւն ղրկեցիր զիս: 9 Ես կը
թախանձեմ անո՛նց համար. ո՛չ թէ կը թախանձեմ աշխարհին համար, այլ անոնց համար՝
որ դուն տուիր ինծի, որովհետեւ անոնք քուկդ են: 10 Եւ ամէն ինչ որ իմս է՝ քո՛ւկդ է, եւ
ինչ որ քուկդ է՝ ի՛մս է, ու ես փառաւորուած եմ անոնցմով: 11 Ա՛լ ես աշխարհի մէջ չեմ.
բայց անոնք աշխարհի մէջ են, ու ես կու գամ քեզի: Սո՛ւրբ Հայր, պահէ՛ քու անունովդ
անոնք՝ որ դուն տուիր ինծի, որպէսզի մէ՛կ ըլլան՝ ինչպէս մենք մէկ ենք: 12 Մինչ անոնց
հետ էի աշխարհի մէջ, զանոնք կը պահէի քու անունովդ: Անոնք որ դուն տուիր ինծի՝ ես
պահեցի, եւ անոնցմէ ո՛չ մէկը կորսուեցաւ, բայց միայն՝ այն կորուստի որդին, որպէսզի
գրուածը իրագործուի: 13 Ա՛լ հիմա կու գամ քեզի, եւ այս բաները կը խօսիմ աշխարհի մէջ,
որպէսզի իմ ուրախութիւնս լման ըլլայ իրենց մէջ: 14 Քու խօսքդ տուի անոնց, եւ
աշխարհը ատեց զանոնք՝ որովհետեւ աշխարհէն չեն, ինչպէս ես աշխարհէն չեմ: 15 Չեմ
թախանձեր որ վերցնես զանոնք աշխարհէն, հապա՝ որ պահես զանոնք չարէն: 16 Անոնք
աշխարհէն չեն, ինչպէս ես աշխարհէն չեմ: 17 Սրբացո՛ւր զանոնք քու ճշմարտութեամբդ.
քու խօ՛սքդ ճշմարտութիւն է: 18 Ինչպէս դուն աշխարհ ղրկեցիր զիս, ես ալ աշխարհ
ղրկեցի զանոնք: 19 Անոնց համար ես զիս կը սրբացնեմ, որպէսզի իրենք ալ սրբացած
ըլլան ճշմարտութեամբ: 20 Բայց կը թախանձեմ ո՛չ միայն ասոնց համար, այլ նաեւ
անոնց համար՝ որ պիտի հաւատան ինծի իրենց խօսքով: 21 Որպէսզի բոլորն ալ մէ՛կ
ըլլան, ինչպէս դուն՝ Հա՛յր՝ իմ մէջս, ու ես՝ քու մէջդ. որ անո՛նք ալ մէկ ըլլան մեր մէջ,
որպէսզի աշխարհը հաւատայ թէ դո՛ւն ղրկեցիր զիս: 22 Այն փառքը՝ որ դուն տուիր ինծի,
ես տուի անոնց, որպէսզի մէկ ըլլան՝ ինչպէս մենք մէկ ենք. 23 (ես՝ անոնց մէջ, ու դուն՝ իմ
մէջս.) որպէսզի իրենք կատարելապէս մէկ ըլլան, եւ աշխարհը գիտնայ թէ դո՛ւն ղրկեցիր
զիս, ու սիրեցիր զանոնք՝ ինչպէս սիրեցիր զիս: 24 Հա՛յր, անոնք որ տուիր ինծի, կ’ուզեմ
որ իրենք ալ ըլլան ինծի հետ՝ ո՛ւր որ ես եմ, որպէսզի տեսնեն իմ փառքս՝ որ տուիր ինծի.
որովհետեւ դուն սիրեցիր զիս աշխարհի հիմնադրութենէն առաջ: 25 Արդա՛ր Հայր,
աշխարհը չճանչցաւ քեզ. բայց ես ճանչցայ քեզ, եւ ասոնք գիտցան թէ դո՛ւն ղրկեցիր
զիս: 26 Քու անունդ ճանչցուցի անոնց, ու պիտի ճանչցնեմ. որպէսզի այն սէրը՝ որով դուն
սիրեցիր զիս՝ ըլլայ անոնց մէջ, ու ե՛ս ալ անոնց մէջ»:*

### ՅԻՍՈՒՍԻ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

*(Մատթ. 26. 47-56: Մարկ. 14. 43-50: Ղուկ. 22. 47-53)*

## 18

*Ասոնք ըսելէն ետք՝ Յիսուս գնաց իր աշակերտներուն հետ Կեդրոն վտակին միւս
կողմը, ուր պարտէզ մը կար, որուն մէջ մտան ինք եւ իր աշակերտները: 2 Յուդա ալ՝ որ
պիտի մատնէր զինք՝ գիտէր այդ տեղը, որովհետեւ Յիսուս յաճախ հաւաքուած էր հոն՝ իր
աշակերտներուն հետ: 3 Ուստի Յուդա, առնելով իրեն հետ զինուորներուն գունդը, եւ
սպասաւորներ՝ քահանայապետներէն ու Փարիսեցիներէն, եկաւ հոն՝ ջահերով,
լապտերներով եւ զէնքերով: 4 Իսկ Յիսուս, գիտնալով իրեն պատահելիք բոլոր բաները,
գնաց եւ ըսաւ անոնց. «Ո՞վ կը փնտռէք»: 5 Պատասխանեցին անոր. «Նազովրեցի
Յիսուսը»: Յիսուս ըսաւ անոնց. «Ե՛ս եմ»: Յուդա ալ՝ որ պիտի մատնէր զինք՝ կայնած էր
անոնց հետ: 6 Երբ ըսաւ. «Ե՛ս եմ», նահանջեցին ու գետին ինկան: 7 Ուստի դարձեալ
հարցուց անոնց. «Ո՞վ կը փնտռէք»: Անոնք ալ ըսին. «Նազովրեցի Յիսուսը»: 8 Յիսուս
պատասխանեց. «Ձեզի ըսի՛ թէ “Ե՛ս եմ□. ուրեմն եթէ զիս կը փնտռէք, ասոնց թո՛յլ տուէք՝
որ երթան»: 9 որպէսզի իրագործուի այն խօսքը՝ որ ըսեր էր. «Ո՛չ մէկը կորսնցուցի*

անոնցմէ՝ որ դո՛ւն տուիր ինծի»: 10 Իսկ Սիմոն Պետրոս՝ որ ունէր սուր մը՝ քաշեց զայն, ու զարնելով քահանայապետին ծառային՝ կտրեց անոր աջ ականջը. այդ ծառային անունը Մաղքոս էր: 11 Հետեւաբար Յիսուս ըսաւ Պետրոսի. «Դի՛ր սուրդ իր պատեանը. միթէ պիտի չխմե՞մ այն բաժակը՝ որ Հայրը տուաւ ինծի»:

## ՅԻՍՈՒՍ ԱՆՆԱՅԻ ԱՌՋԵՒ

12 Ուստի զինուորներուն գունդը, հազարապետն ու Հրեաներուն սպասաւորները բռնեցին Յիսուսը, կապեցին, 13 եւ տարին զայն նախ Աննայի, քանի որ ինք աներն էր այդ տարուան քահանայապետին՝ Կայիափայի: 14 Այս Կայիափան էր՝ որ թելադրեց Հրեաներուն. «Աւելի օգտակար է որ մէ՛կ մարդ [ա]մեռնի ժողովուրդին համար»

## ՊԵՏՐՈՍ Կ՚ՈՒՐԱՆԱՅ ՅԻՍՈՒՍԸ
(Մատթ. 26. 69-70: Մարկ. 14. 66-68: Ղուկ. 22. 55-57)

15 Սիմոն Պետրոս եւ ուրիշ աշակերտ մը կը հետեւէին Յիսուսի: Այդ աշակերտը ծանօթ էր քահանայապետին, ու մտաւ Յիսուսի հետ քահանայապետին գաւիթը: 16 Բայց Պետրոս կը կենար դուրսը՝ դրան քով. ուստի միւս աշակերտը՝ որ ծանօթ էր քահանայապետին՝ դուրս ելաւ, խօսեցաւ դռնապանին, ու ներս բերաւ Պետրոսը: 17 Իսկ դռնապան աղջիկը ըսաւ Պետրոսի. «Միթէ դո՞ւն ալ այդ մարդուն աշակերտներէն ես»: Ան ալ ըսաւ. «Ոչ՛մ»: 18 Ծառաներն ու սպասաւորները կայնած էին հոն, եւ կրակ վառած՝ կը տաքնային, քանի որ ցուրտ էր: Պետրոս ալ կայնած էր անոնց հետ, ու կը տաքնար:

## ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԸ ԿԸ ՀԱՐՑԱՔՆՆԷ ՅԻՍՈՒՍԸ
(Մատթ. 26. 59-66: Մարկ. 14. 55-64: Ղուկ. 22. 66-71)

19 Քահանայապետը հարցուց Յիսուսի՝ իր աշակերտներուն եւ ուսուցումին մասին: 20 Յիսուս պատասխանեց անոր. «Ես բացորոշապէս խօսեցայ աշխարհին. ամէն ատեն սորվեցուցի ժողովարաններուն մէջ ու տաճարին մէջ, ուր բոլոր Հրեաները կը համախմբուէին, եւ ոչինչ խօսեցայ գաղտնի: 21 Ինչո՞ւ ինծի՛ կը հարցնես, լսողներո՛ւն հարցուր թէ ի՛նչ խօսեցայ իրենց. ահա՛ իրենք գիտեն ինչ որ խօսեցայ»: 22 Երբ ըսաւ ասիկա, սպասաւորներէն մէկը՝ որ քովը կայնած էր, ապտակ մը զարկաւ Յիսուսի՝ ըսելով. «Ա՞յդպէս կը պատասխանես քահանայապետին»: 23 Յիսուս պատասխանեց անոր. «Եթէ գէշ խօսեցայ, վկայէ՛ գէշին մասին. իսկ եթէ լաւ խօսեցայ, ինչո՞ւ կը զարնես ինծի»: 24 Յետոյ Աննա կապուած ղրկեց զայն Կայիափա քահանայապետին:

## ՊԵՏՐՈՍ ԴԱՐՁԵԱԼ Կ՚ՈՒՐԱՆԱՅ
(Մատթ. 26. 71-75: Մարկ. 14. 69-72: Ղուկ. 22. 58-62)

25 Սիմոն Պետրոս կայնած էր հոն, ու կը տաքնար: Ուրեմն ըսին իրեն. «Միթէ դո՞ւն ալ անոր աշակերտներէն ես»: Ան ուրացաւ՝ ըսելով. «Ոչ՛մ»: 26 Քահանայապետին ծառաներէն մէկն ալ, ազգականը անոր՝ որուն ականջը Պետրոս կտրեր էր, ըսաւ. «Ես չտեսա՞յ քեզ պարտէզին մէջ՝ անոր հետ»: 27 Ուստի Պետրոս դարձեալ ուրացաւ. եւ իսկոյն աքաղաղը կանչեց:

---

[ա] Յուն.՝ կորսուի

## ՅԻՍՈՒՍ ՊԻՂԱՏՈՍԻ ԱՌՋԵՒ
(Մատթ. 27. 1-2, 11-14: Մարկ. 15. 1-5: Ղուկ. 23. 1-5)

28 Կայիափայի տունէն տարին Յիսուսը կառավարիչին պալատը. եւ ա՛լ առտու էր:
Իրենք չմտան պալատը՝ որպէսզի չպղծուին, այլ կարենան ուտել զատիկը: 29 Ուստի
Պիղատո՛ս դուրս ելաւ՝ անոնց քով, եւ ըսաւ. «Ի՞նչ ամբաստանութիւն կը ներկայացնէք
այս մարդուն դէմ»: 30 Պատասխանեցին իրեն. «Եթէ ան չարագործ մը չըլլար՝ քեզի
չէինք մատներ զայն»: 31 Ուստի Պիղատոս ըսաւ անոնց. «Դո՛ւք առէք զայն, ու դատեցէ՛ք
ձեր Օրէնքին համաձայն»: Իսկ Հրեաները ըսին իրեն. «Մեզի արտօնուած չէ [բ]մեռցնել
ոեւէ մէկը». 32 որպէսզի իրագործուի Յիսուսի խօսքը՝ որ ըսեր էր, մատնանշելով թէ ի՛նչ
մահով պիտի մեռնէր: 33 Իսկ Պիղատոս դարձեալ մտաւ պալատը, կանչեց Յիսուսը եւ
ըսաւ անոր. «Դո՞ւն ես Հրեաներուն թագաւորը»: 34 Յիսուս պատասխանեց անոր.
«Ասիկա դուն քեզմէ՞ կ՚ըսես, թէ ուրիշնե՛ր ըսին քեզի՝ իմ մասիս»: 35 Պիղատոս
պատասխանեց. «Միթէ ես Հրեա՞յ եմ. քո՛ւ ազգդ եւ քահանայապետները մատնեցին քեզ
ինծի. դուն ի՞նչ ըրած ես»: 36 Յիսուս պատասխանեց. «Իմ թագաւորութիւնս այս
աշխարհէն չէ: Եթէ իմ թագաւորութիւնս այս աշխարհէն ըլլար, իմ սպասաւորներս կը
պայքարէին՝ որ ես չմատնուիմ Հրեաներուն ձեռքը: Բայց հիմա՝ իմ թագաւորութիւնս ասկէ
չէ»: 37 Հետեւաբար Պիղատոս ըսաւ անոր. «Ուրեմն դուն թագաւո՞ր մըն ես»: Յիսուս
պատասխանեց. «Դո՛ւն կ՚ըսես թէ թագաւոր եմ: Ես սա՛ նպատակով ծնած եմ, սա՛
նպատակով աշխարհ եկած եմ, որպէսզի վկայեմ ճշմարտութեան համար. ո՛վ որ
ճշմարտութենէն է՝ կը լսէ իմ ձայնս»:

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԻ ՄԱՀՈՒԱՆ
(Մատթ. 27. 15-31: Մարկ. 15. 6-20: Ղուկ. 23. 13-25)

38 Պիղատոս ըսաւ անոր. «Ի՞նչ է ճշմարտութիւնը»: Երբ ըսաւ ասիկա՝ դարձեալ դուրս
ելաւ Հրեաներուն քով, եւ ըսաւ անոնց. «Ես ո՛չ մէկ յանցանք կը գտնեմ անոր վրայ: 39
Բայց քանի սովորութիւն ունիք՝ որ մարդ մը արձակեմ ձեզի Զատիկին, կը փափաքի՞ք որ
արձակեմ ձեզի Հրեաներուն թագաւորը»: 40 Այն ատեն բոլորն ալ դարձեալ պոռացին.
«Ո՛չ ասիկա, հապա՝ Բարաբբան», մինչդեռ Բարաբբա աւազակ մըն էր:

# 19

Այն ատեն Պիղատոս առաւ Յիսուսը եւ խարազանեց: 2 Զինուորներն ալ հիւսեցին
փուշէ պսակ մը ու դրին անոր գլուխը, եւ հագցուցին անոր ծիրանի հանդերձ մը 3 ու
կ՚ըսէին. «Ողջո՛յն, Հրեաներո՛ւ թագաւոր», եւ ապտակներ կը զարնէին անոր: 4 Պիղատոս
դարձեալ դուրս ելաւ ու ըսաւ անոնց. «Ահա՛ դուրս կը բերեմ զայն ձեզի, որպէսզի գիտնաք
թէ ես ո՛չ մէկ յանցանք կը գտնեմ անոր վրայ»: 5 Ուստի Յիսուս դուրս ելաւ՝ կրելով փուշէ
պսակն ու ծիրանի հանդերձը, եւ Պիղատոս ըսաւ անոնց. «Ահա՛ այդ մարդը»: 6 Երբ
քահանայապետներն ու սպասաւորները տեսան զայն, պոռացին. «Խաչէ՛, խաչէ՛ զայն»:
Պիղատոս ըսաւ անոնց. «Դո՛ւք առէք զայն ու խաչեցէք, որովհետեւ ես ո՛չ մէկ յանցանք
կը գտնեմ անոր վրայ»: 7 Հրեաները պատասխանեցին իրեն. «Մենք Օրէնք մը ունինք, եւ
մեր Օրէնքին համաձայն՝ պարտաւոր է մեռնիլ, որովհետեւ Աստուծոյ Որդի ըրաւ
ինքզինք»: 8 Իսկ երբ Պիղատոս լսեց այս խօսքը՝ ա՛լ աւելի վախցաւ, 9 ու դարձեալ

---

[բ] Յուն.՝ սպաննել

մտնելով պալատը՝ ըսաւ Յիսուսի. «Դուն ուրկէ՞ ես»: Բայց Յիսուս պատասխան չտուաւ
անոր: 10 Ուստի Պիղատոս ըսաւ անոր. «Չե՞ս խօսիր ինծի հետ. չե՞ս գիտեր թէ
իշխանութիւն ունիմ խաչելու քեզ, եւ իշխանութիւն ունիմ արձակելու քեզ»: 11 Յիսուս
պատասխանեց. «Դուն ո՛չ մէկ իշխանութիւն կ՚ունենայիր իմ վրաս, եթէ վերէն տրուած
չըլլար քեզի: Ուստի ա՛ն որ մատնեց զիս քեզի՝ աւելի՛ մեծ մեղք ունի»: 12 Ատկէ ետք
Պիղատոս կը ջանար արձակել զայն. բայց Հրեաները կ՚աղաղակէին. «Եթէ արձակես
ատիկա՝ կայսրին բարեկամը չես. ո՛վ որ թագաւոր կ՚ընէ ինքզինք՝ կը խօսի կայսրին դէմ»:
13 Ուրեմն Պիղատոս՝ երբ լսեց այս խօսքը՝ դուրս հանեց Յիսուսը, բազմեցաւ դատարանը,
այն տեղը՝ որ Քարայատակ կը կոչուէր, իսկ եբրայերէն՝ Կապպաթա, 14 (Զատիկի
Ուրբաթն էր, գրեթէ "[ա]վեցերորդ ժամը",) եւ ըսաւ Հրեաներուն. «Ահա՛ ձեր թագաւորը»: 15
Բայց անոնք պոռացին. «Վերցո՛ւր, վերցո՛ւր, խաչէ՛ զայն»: Պիղատոս ըսաւ անոնց. «Ձեր
թագաւո՞րը խաչեմ»: Քահանայապետները պատասխանեցին. «Մենք թագաւոր չունինք՝
կայսրէն զատ»: 16 Այն ատեն յանձնեց զայն անոնց՝ որպէսզի խաչուէր:

## ՅԻՍՈՒՍ ԿԸ ԳԱՄՈՒԻ ԽԱՉԻՆ ՎՐԱՅ
(Մատթ. 27. 32-44: Մարկ. 15. 21-32: Ղուկ. 23. 26-43)

17 Անոնք ալ առին Յիսուսը ու տարին. եւ ինք՝ վերցնելով իր խաչը՝ գնաց Գանկ
կոչուած տեղը, որ եբրայերէն Գողգոթա կը կոչուի: 18 Հոն խաչեցին զայն, ու երկու
ուրիշներ ալ անոր հետ՝ մէկ կողմէն եւ միւս կողմէն, իսկ մէջտեղը՝ Յիսուսը: 19 Պիղատոս
գրեց տիտղոս մը ու դրաւ խաչին վրայ. գրուած էր. «Յիսուս Նազովրեցի՝ Հրեաներուն
թագաւորը»: 20 Ուստի Հրեաներէն շատեր կարդացին այդ տիտղոսը, որովհետեւ այն
տեղը՝ ուր Յիսուս խաչուեցաւ՝ մօտ էր քաղաքին. գրուած էր եբրայերէն, յունարէն ու
լատիներէն: 21 Իսկ Հրեաներուն քահանայապետները ըսին Պիղատոսի. «Մի՛ գրեր.
“Հրեաներուն թագաւորը□, հապա գրէ՛ թէ ի՛նք ըսաւ. “Հրեաներուն թագաւորն եմ□»: 22
Պիղատոս պատասխանեց. «Ի՛նչ որ գրեցի՝ գրեցի՛»:
23 Երբ զինուորները խաչեցին Յիսուսը, առին անոր հանդերձները ու բաժնեցին չորսի,
իւրաքանչիւր զինուորի՝ բաժին մը. նաեւ բաճկոնը: Բաճկոնը առանց կարի էր,
ամբողջովին հիւսուած՝ վերէն վար: 24 Ուստի ըսին իրարու. «Չպատռե՛նք զայն, հապա
վիճա՛կ ձգենք անոր վրայ՝ թէ որո՛ւ պիտի ըլլայ». որպէսզի իրագործուի այն գրուածը՝ որ
կ՚ըսէ. «Իմ հանդերձներս բաժնեցին իրենց մէջ, եւ իմ պատմուճանիս վրայ վիճակ
ձգեցին»: Ուրեմն զինուորնե՛րը ըրին այս բաները:
25 Յիսուսի խաչին քով կայնած էին իր մայրը եւ իր մօր քոյրը, Մարիամ՝ Կղէովպասի
կինը, ու Մարիամ Մագդաղենացին: 26 Ուրեմն երբ Յիսուս տեսաւ իր մայրը, եւ այն
աշակերտը որ կը սիրէր՝ քովը կայնած, ըսաւ իր մօր. «Կի՛ն, ահա՛ քու որդիդ»: 27 Յետոյ
ըսաւ աշակերտին. «Ահա՛ քու մայրդ»: Եւ այդ ժամէն ետք՝ աշակերտը ընդունեց զայն իր
քով:

## ՅԻՍՈՒՍԻ ՄԱՀԸ
(Մատթ. 27. 45-56: Մարկ. 15. 33-41: Ղուկ. 23. 44-49)

28 Անկէ ետք՝ Յիսուս, գիտնալով թէ արդէն ամէն բան կատարուած է, (որպէսզի
գրուածը ամբողջանայ,) ըսաւ. «Ծարա՛ւ եմ»: 29 Հոն անօթ մը դրուած էր՝ լի քացախով.
անոնք ալ լեցուցին սպունգ մը քացախով, անցուցին զոպայի մշտիկի մը եւ

[ա] Այսինքն՝ կէսօր

մատուցանեցին անոր բերանին: 30 Ուստի երբ Յիսուս առաւ քացախը՝ ըսաւ. «Ամէն բան կատարուեցաւ». ու խոնարհեցնելով գլուխը՝ աւանդեց հոգին:

### ՅԻՍՈՒՍԻ ԿՈՂԸ ԿԸ ԽՈՑՈՒԻ

31 Քանի որ Ուրբաթ էր, Հրեաները թախանձեցին Պիղատոսի՝ որ անոնց սրունքները կոտրուին ու վերցուին, որպէսզի մարմինները չմնան խաչին վրայ մինչեւ Շաբաթ (որովհետեւ այդ Շաբաթը մեծ օր էր): 32 Ուստի զինուորները եկան եւ կոտրեցին առաջինին սրունքները. նաեւ միւսին՝ որ խաչուած էր անոր հետ: 33 Բայց երբ եկան Յիսուսի, ու տեսան թէ արդէն մեռած էր, չկոտրեցին անոր սրունքները. 34 հապա զինուորներէն մէկը՝ գեղարդով խոցեց անոր կողը, եւ իսկոյն արիւն ու ջուր դուրս ելան: 35 Ան որ տեսաւ այս բաները՝ վկայեց, եւ անոր վկայութիւնը ճշմարիտ է, ու ինք գիտէ թէ կ՚ըսէ [բ]ճշմարտութիւնը, որ դո՛ւք (ալ) հաւատաք: 36 Արդարեւ այս բաները կատարուեցան, որպէսզի իրագործուի այն գրուածը. «Անոր ո՛չ մէկ ոսկորը պիտի կոտրուի»: 37 Եւ դարձեալ ուրիշ գրուած մը կ՚ըսէ. «Պիտի նային անոր՝ որ խոցեցին»:

### ՅԻՍՈՒՍԻ ԹԱՂՈՒՄԸ
(Մատթ. 27. 57-61: Մարկ. 15. 42-47: Ղուկ. 23. 50-56)

38 Ասկէ ետք՝ Յովսէփ Արիմաթեացին, (որ Յիսուսի աշակերտ եղած էր, բայց գաղտնի՝ Հրեաներէն վախնալով,) թախանձեց Պիղատոսի՝ որ վերցնէ Յիսուսի մարմինը: Պիղատոս ալ արտօնեց. ուրեմն եկաւ ու վերցուց Յիսուսի մարմինը: 39 Նիկոդեմոս ալ եկաւ (որ նախապէս՝ գիշերուան մէջ գացեր էր Յիսուսի), եւ բերաւ զմուռսի ու հալուէի խառնուրդ մը՝ հարիւր լիտրի չափ: 40 Ուրեմն առին Յիսուսի մարմինը, եւ փաթթեցին զայն բոյրերուն հետ՝ լաթերու մէջ, ինչպէս Հրեաները սովորութիւն ունին թաղելու: 41 Այն տեղը ուր խաչուեցաւ՝ պարտէզ մը կար, եւ պարտէզին մէջ՝ նոր գերեզման մը, որուն մէջ ամե՛նեւին մարդ դրուած չէր: 42 Ուստի հոն դրին Յիսուսը՝ Հրեաներու Ուրբաթին պատճառով, որովհետեւ գերեզմանը մօտ էր:

### ՊԱՐԱՊ ԳԵՐԵԶՄԱՆԸ
(Մատթ. 28. 1-8: Մարկ. 16. 1-8: Ղուկ. 24. 1-12)

## 20

Մէկշաբթի օրը՝ Մարիամ Մագդաղենացին, առտուն՝ դեռ չլուսցած՝ կ՚երթայ գերեզման, եւ կը տեսնէ թէ քարը վերցուած է գերեզմանին դռնէն: 2 Ուստի կը վազէ՝ կու գայ Սիմոն Պետրոսի, ու միւս աշակերտին՝ որ Յիսուս կը սիրէր, եւ կ՚ըսէ անոնց. «Վերցուցած են Տէրը գերեզմանէն, ու չենք գիտեր ո՛ւր դրած են զայն»: 3 Ուրեմն Պետրոս եւ միւս աշակերտը մեկնեցան, ու կ՚երթային դէպի գերեզմանը: 4 Երկուքն ալ կը վազէին միասին. սակայն միւս աշակերտը՝ Պետրոսէն աւելի արագ վազելով՝ անկէ առաջ հասաւ գերեզմանը, 5 ծռելով նայեցաւ, եւ տեսաւ թէ լաթերը դրուած էին հոն. բայց ներս չմտաւ: 6 Սիմոն Պետրոս ալ՝ որ կը հետեւէր անոր՝ հասաւ, մտաւ գերեզմանը, ու տեսաւ լաթերը՝ որոնք դրուած էին հոն. 7 իսկ վարշամակը՝ որ անոր գլխուն էր՝ միւս լաթերուն հետ դրուած չէր, հապա ծալուած՝ զա՛տ տեղ մըն էր: 8 Այն ատեն միւս աշակերտն ալ՝ որ աւելի առաջ եկած էր գերեզմանը՝ ներս մտաւ, տեսաւ եւ հաւատաց: 9 Որովհետեւ դեռ չէին գիտեր գրուածը, թէ պէտք է որ ան յարութիւն առնէ մեռելներէն: 10 Ուստի

---

[բ] Յուն.՝ ճշմարիտը

աշակերտները վերադարձան իրենց տունը:

## ՅԻՍՈՒՍ Կ'ԵՐԵՒՆԱՅ ՄԱՐԻԱՄ ՄԱԳԴԱՂԵՆԱՑԻԻՆ
(Մատթ. 28. 9-10: Մարկ. 16. 9-11)

11 Բայց Մարիամ կայնած էր գերեզմանին դուրսը, եւ կու լար: Մինչ կու լար, ծռեցաւ
դէպի գերեզմանը՝ նայելու, 12 ու տեսաւ երկու հրեշտակներ՝ ճերմակ հանդերձներով, որ
նստած էին հո՛ն՝ ուր Յիսուսի մարմինը դրուած էր, մէկը գլուխին կողմը, եւ միւսը՝ ոտքին:
13 Անոնք ըսին իրեն. «Կի՛ն, ինչո՞ւ կու լաս»: Ըսաւ անոնց. «Որովհետեւ վերցուցած են իմ
Տէրս գերեզմանէն, ու չեմ գիտեր ո՛ւր դրած են զայն»: 14 Երբ ըսաւ ասիկա՝ ետեւ դարձաւ,
եւ տեսաւ Յիսուսը՝ որ կայնած էր, ու չէր գիտեր թէ Յիսուսն է: 15 Յիսուս ըսաւ անոր.
«Կի՛ն, ինչո՞ւ կու լաս, ո՞վ կը փնտռես»: Ինք՝ կարծելով թէ ան պարտիզպանն է, ըսաւ
անոր. «Տէ՛ր, եթէ դո՛ւն տեղափոխեցիր զայն, ըսէ՛ ինծի՝ ո՞ւր դրիր զայն, որպէսզի
վերցնեմ զայն»: 16 Յիսուս ըսաւ անոր. «Մարիա՛մ»: Ան ալ դարձաւ եւ ըսաւ անոր
(եբրայերէն). «Ռաբբունի՛», որ ըսել է՝ Վարդապետ: 17 Յիսուս ըսաւ անոր. «Մի՛ դպչիր
ինծի, որովհետեւ դեռ բարձրացած չեմ Հօրս քով. հապա գնա՛ եղբայրներուս եւ ըսէ՛
անոնց. "Ես կը բարձրանամ իմ Հօրս քով ու ձեր Հօր քով, իմ Աստուծոյս քով եւ ձեր
Աստուծոյն քով□»: 18 Մարիամ Մագդաղենացին գնաց, ու պատմեց աշակերտներուն թէ
ինք տեսաւ Տէրը, եւ թէ ա՛ն ըսաւ իրեն այս բաները:

## ՅԻՍՈՒՍ Կ'ԵՐԵՒՆԱՅ ԻՐ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ
(Մատթ. 28. 16-20: Մարկ. 16. 14-18: Ղուկ. 24. 36-49)

19 Նոյն օրը, Մէկշաբթի իրիկուն, աշակերտներուն հաւաքուած տեղին դռները գոց էին՝
քանի որ կը վախնային Հրեաներէն: Յիսուս եկաւ, կայնեցաւ անոնց մէջտեղ եւ ըսաւ
անոնց. «Խաղաղութի՛ւն ձեզի»: 20 Ասիկա ըսելով՝ ցուցուց անոնց իր ձեռքերն ու կողը.
աշակերտներն ալ ուրախացան՝ երբ տեսան Տէրը: 21 Յիսուս դարձեալ ըսաւ անոնց.
«Խաղաղութի՛ւն ձեզի. ինչպէս Հայրը ղրկեց զիս, ես ալ կը ղրկեմ ձեզ»: 22 Ասիկա
ըսելով՝ փչեց անոնց վրայ եւ ըսաւ անոնց. «Ընդունեցէ՛ք Սուրբ Հոգին: 23 Որո՛նց մեղքերը
որ ներէք՝ ներուած ըլլան անոնց, եւ որո՛նց մեղքերը որ պահէք՝ պահուած ըլլան»:

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ԹՈՎՄԱՍ

24 Բայց տասներկուքէն մէկը, Երկուորեակ կոչուած Թովմաս, անոնց հետ չէր՝ երբ
Յիսուս եկաւ: 25 Ուրեմն միւս աշակերտները ըսին անոր. «Տէ՛րը տեսանք»: Ան ալ ըսաւ
անոնց. «Պիտի չհաւատամ, եթէ չտեսնեմ գամերուն տիպը՝ իր ձեռքերուն վրայ, ու չմխեմ
մատս գամերուն տիպին մէջ, եւ չմխեմ ձեռքս անոր կողին մէջ»:

26 Ութ օր ետք՝ դարձեալ աշակերտները ներսն էին, Թովմաս ալ՝ անոնց հետ: Յիսուս
եկաւ՝ թէպէտ դռները գոց էին, կայնեցաւ անոնց մէջտեղ եւ ըսաւ. «Խաղաղութի՛ւն ձեզի»:
27 Յետոյ ըսաւ Թովմասի. «Հո՛ս բեր մատդ ու տե՛ս ձեռքերս, բե՛ր ձեռքդ եւ մխէ՛ կողիս
մէջ, ու մի՛ ըլլար անհաւատ, հապա՝ հաւատացեալ»: 28 Թովմաս պատասխանեց անոր.
«Իմ Տէ՛րս եւ Աստուա՛ծս»: 29 Յիսուս ըսաւ անոր. «[ա] Դուն հաւատացիր՝ որովհետեւ
տեսար զիս. երանի՜ անոնց որ կը հաւատան՝ առանց տեսնելու»:

---

[ա] Ոմանք՝ Թովմա՛ս, դուն

## ԱՅՍ ԳԻՐՔԻՆ ՆՊԱՏԱԿԸ

30 Յիսուս ըրաւ ուրիշ բազմաթիւ նշաններ ալ իր աշակերտներուն առջեւ, որոնք
գրուած չեն այս գիրքին մէջ: 31 Բայց ասոնք գրուեցան, որպէսզի հաւատաք թէ Յիսուս՝
Քրիստոսն է, Աստուծոյ Որդին, եւ հաւատալով կեանք ունենաք՝ անոր անունով:

## ՅԻՍՈՒՍ Կ՚ԵՐԵՒՆԱՅ ԵՕԹԸ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

# 21

Ասկէ ետք՝ Յիսուս դարձեալ բացայայտեց ինքզինք իր աշակերտներուն, Տիբերիայի
ծովուն եզերքը. եւ սա՛պէս բացայայտեց: 2 Սիմոն Պետրոս, Թովմաս՝ Երկուորեակ
կոչուածը, Նաթանայէլ՝ որ Գալիլեայի Կանա քաղաքէն էր, Զեբեդէոսի որդիները, նաեւ
աշակերտներէն երկու ուրիշներ միասին էին: 3 Սիմոն Պետրոս ըսաւ անոնց. «Ես կ՚երթամ
ձուկ որսալու»: Ըսին անոր. «Մե՛նք ալ կու գանք քեզի հետ»: Դուրս ելան եւ իսկոյն նաւ
[ա]մտան. բայց այդ գիշեր ոչինչ բռնեցին: 4 Երբ արդէն առտու եղաւ՝ Յիսուս կայնած էր
ծովեզերքը, բայց աշակերտները չճանչցան թէ Յիսուսն է: 5 Իսկ Յիսուս ըսաւ անոնց.
«Զաւակնե՛ր, ունի՞ք ուտելիք բան մը»: Պատասխանեցին իրեն. «Ո՛չ»: 6 Ըսաւ անոնց.
«Նետեցէ՛ք ուռկանը նաւուն աջ կողմը, ու պիտի գտնէք»: Ուրեմն նետեցին, եւ ձուկերուն
շատութենէն՝ ա՛լ կարող չէին քաշել զայն: 7 Ուստի այն աշակերտը որ Յիսուս կը սիրէր՝
ըսաւ Պետրոսի. «Անիկա Տէ՛րն է»: Երբ Սիմոն Պետրոս լսեց թէ Տէրն է, վրան առաւ
բաճկոնը՝ որովհետեւ մերկ էր, ու նետուեցաւ ծովը: 8 Իսկ միւս աշակերտները եկան
նաւակով, (որովհետեւ ցամաքէն հեռու չէին, միայն երկու հարիւր կանգունի չափ,) եւ կը
քաշէին ուռկանը՝ ձուկերով լեցուն: 9 Երբ ցամաք ելան՝ հոն տեսան վառուած կրակ մը, ու
վրան դրուած ձուկ, եւ հաց: 10 Յիսուս ըսաւ անոնց. «Բերէ՛ք այդ ձուկերէն՝ որ բռնեցիք
հիմա»: 11 Սիմոն Պետրոս նաւ [բ]մտաւ եւ ցամաք քաշեց ուռկանը՝ լի հարիւր յիսուներեք
խոշոր ձուկերով. թէպէտ ա՛յդքան բան կար, ուռկանը չպատռեցաւ: 12 Յիսուս ըսաւ
անոնց. «Եկէ՛ք, ճաշեցէ՛ք»: Աշակերտներէն ո՛չ մէկը կը յանդգնէր հարցնել անոր. «Դուն
ո՞վ ես», որովհետեւ գիտէին թէ Տէրն է: 13 Ուստի Յիսուս եկաւ, առաւ հացը եւ տուաւ
անոնց, նմանապէս՝ ձուկը: 14 Այս արդէն երրորդ անգամն էր, որ Յիսուս բացայայտեց
ինքզինք իր աշակերտներուն՝ մեռելներէն յարութիւն առնելէն ետք:

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ՊԵՏՐՈՍ

15 Երբ ճաշեցին՝ Յիսուս ըսաւ Սիմոն Պետրոսի. «Սիմո՛ն, Յովնանի՛ որդի, կը սիրե՞ս
զիս ասոնցմէ աւելի»: Ան ըսաւ անոր. «Այո՛, Տէ՛ր, դուն գիտես թէ կը սիրեմ քեզ»: Ըսաւ
անոր. «Արածէ՛ իմ գառնուկներս»: 16 Դարձեալ երկրորդ անգամ ըսաւ անոր. «Սիմո՛ն,
Յովնանի՛ որդի, կը սիրե՞ս զիս»: Ըսաւ անոր. «Այո՛, Տէ՛ր, դուն գիտես թէ կը սիրեմ քեզ»:
Ըսաւ անոր. «Հովուէ՛ իմ ոչխարներս»: 17 Ըսաւ անոր երրորդ անգամ. «Սիմո՛ն, Յովնանի՛
որդի, կը սիրե՞ս զիս»: Պետրոս տրտմեցաւ որ երեք անգամ ըսաւ իրեն. «Կը սիրե՞ս զիս»,
եւ ըսաւ անոր. «Տէ՛ր, դուն ամէ՛ն բան գիտես, դուն գիտես թէ կը սիրեմ քեզ»: Յիսուս
ըսաւ անոր. «Արածէ՛ իմ ոչխարներս: 18 Ճշմա՛րտապէս, ճշմա՛րտապէս կը յայտարարեմ
քեզի. “Երբ դեռատի էիր, ինքնիրմէ՛դ գօտի կը կապէիր, եւ ո՛ւր ուզէիր՝ կ՚երթայիր. բայց
երբ ծերանաս՝ պիտի երկարես ձեռքերդ, ուրի՛շը գօտի պիտի կապէ քեզի, ու պիտի տանի

[ա] Յուն.՝ ելան

[բ] Յուն.՝ ելաւ

*հո՛ն՝ ուր չես ուզեր□»: 19 Ասիկա խօսեցաւ՝ մատնանշելով թէ ան ի՛նչ մահով պիտի
փառաւորէր Աստուած: Երբ խօսեցաւ ասիկա՝ ըսաւ անոր. «Հետեւէ՛ ինծի»:*

## ՅԻՍՈՒՍ ԵՒ ՄԻՒՍ ԱՇԱԿԵՐՏԸ

*20 Պետրոս ետեւ դարձաւ, ու տեսաւ թէ իրեն կը հետեւէր այն աշակերտը՝ որ Յիսուս կը
սիրէր. (ան նաեւ ինկեր էր անոր կուրծքին վրայ՝ ընթրիքին ատենը, եւ ըսեր էր. «Տէ՛ր, ո՞վ
է ա՛ն՝ որ պիտի մատնէ քեզ».) 21 Պետրոս՝ տեսնելով զայն՝ ըսաւ Յիսուսի. «Տէ՛ր, հապա
ասիկա՛ ի՞նչ պիտի ըլլայ»: 22 Յիսուս ըսաւ անոր. «Եթէ ես ուզեմ, որ ան մնայ՝ մինչեւ որ
գամ, քու ի՞նչ հոգդ է. դուն հետեւէ՛ ինծի»: 23 Ուստի սա՛ խօսքը տարածուեցաւ
եղբայրներուն մէջ՝ թէ այդ աշակերտը պիտի չմեռնի: Սակայն Յիսուս չըսաւ անոր.
«Պիտի չմեռնի», հապա. «Եթէ ես ուզեմ, որ ան մնայ՝ մինչեւ որ գամ, քու ի՞նչ հոգդ է»:*

## ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

*24 Ա՛յս աշակերտն է՝ որ կը վկայէ այս բաներուն մասին, եւ գրեց ասոնք. ու գիտենք թէ
անոր վկայութիւնը ճշմարիտ է: 25 Ուրիշ շատ բաներ ալ կան՝ որ Յիսուս ըրաւ. եթէ
անոնք մէկ առ մէկ գրուած ըլլային, կարծեմ թէ նոյնիսկ աշխարհն ալ բաւական պիտի
չըլլար՝ պարունակելու այն գիրքերը, որ գրուած պիտի ըլլային: Ամէն:*